ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ (ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԳԻՏԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
ԵՐԵՎԱՆ № 2 1949 թ.

ԱՍ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

# ԱՆՏԻՊ ԷՋԵՐ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՊՈԵԶԻԱՅԻՑ

*Տպագրության ներկայացվող բանաստեղծությունների այս շարքը քաղված է ՀՍՍՌ Մատենադարանի ձեռագրերից: Դրանք բոլորն էլ տպագրվում են առաջին անգամ:*

*Այս բանաստեղծությունների ամենամեծ արժանիքը՝ նրանց բովանդակությունն է:*

*Հակոբ Ակնեցին (XVII դար) նկարագրում է Թուրք բանակալ Սուլթան-Մուրադի հրամանով Կոստանդնուպոլսից արտաքըսված հայերի, հույների և այլ ազգերի ծանր վիճակը: Լինելով արտաքսվողների քարավանում, նա, որպես ականատես, ցույց է տալիս հատկապես հայ գաղթականության տառապանքները, զոհերը և տարբեր աշխարհներ ցրիվ գալը:*

*Ջուղահայ անվանի աշուղ Բաղեր Օղլի Ղազարը (XVIII դ.) ցույց է տալիս պարսիկ բանակալ Նադիր Շահի բարբարոսությունները, նրա նշանակած բազմաթիվ, ծանր հարկերը և ժողովրդի ստրկական վիճակը: Բաղեր Օղլին ևս, Հակոբ Ակնեցու նման, նկարագրում է նաև ուրիշ ազգերի կրած նույն անլուր հալածանքները. ուստի, թվելով Նադիր Շահի դաժանությունները, նա գրում է.*

*«...Ուզում այ շալ ու մահուդն,*
*Կտրում այ աշխարհիս ումուդն,*
Թուրքին ու խային ու Ջհուդն՝
Ողջին էլ դարբէդա՞ր այ ուզում:

*Երկու անհայտ հեղինակներ (հավանաբար XVI—XVII դարերի) և Հակոբ Սանեցին (XVII դար) իրենց բանաստեղծություններին նյութ են դարձնում հայ ժողովրդի ներքին թշնամիներին: Նրանք կամ սարկազմի կամ անարգանքի կծու խոսքերով են պախարակում հոգևորականների և հարուստների ագահությունը, թալանը և բռնությունները:*

*Նազարեթը ողբում է հայ իշխանների չկամության պատճառով դժբախտացած «քույր Շահանի» անտանելի վիճակը:*

*«Տաղ կռընկին» ժողովրդական ծագում ունեցող և Հովսեփ ու Բարունակ երգիչների բանաստեղծությունների մեջ դրսևորված է պանդուխտ հայի դառն ու դժվար վիճակը և նրա կարոտը՝ հայրենի երկրի նկատմամբ:*

*Ոհն Հարություն (XVIII դար) նկարագրում է միջնադարյան դպրոցի սիմվոլ ֆալախայի սարսափները՝ և իր փախուստը՝ վանական դպրոցից:*

*Կան նաև սիրո ու այլ թեմաներով հորինված երգեր էլ:*

*Իսկ Ալեքսանդր գրիչն, առաջինը լինելով մեր բանասիրության մեջ, XIX դարի սկզբներին, գրի է առնում ժողովրդական—հարսանեկան մի երգի «Մոռացովք» («Մազկոց»-ներից), որի հնությունը կրում է նախաքրիստոնեական դարերի կնիքը:*

*Այս բանաստեղծությունների հաջորդ կարևոր արժանիքներից կարելի է թվել հետևյալները.*

*Դրանցից շատերը հորինված են բանաստեղծական մեծ վարպետությամբ, ժողովրդական պոեզիայի անմիջական և բարերար ազդեցությամբ, միջնադարյան աշխարհիկ լեզվով, երբեմն էլ բարբառներով և ժողովրդի բառ ու բանով:*

*Դրանից մի քանիսի շնորհիվ մենք ծանոթանում ենք նաև այնպիսի բանաստեղծների հետ, որոնք մինչև օրս հայտնի չեն*

եղել (Հակոբ Ակնեցի, Օքսուզ Ակնաւիք, Բարունակ, Հովսեփ, Հարություն և այլն):

Բանաստեղծություններից մի քանիսի մեջ գտնում ենք բանասիրական կարևոր տեղեկություններ, որոնցով լուսաբանվում են իրենց հեղինակների կենսագրության հետ կապված որոշ խնդիրներ (տես ծանոթությունների մեջ):

* * *

Տպագրվող շարքի ուսումնասիրությունը դյուրացնելու նպատակով՝ բնագրերին կցում ենք համառոտ ծանոթություններ, իսկ յուրաքանչյուր բանաստեղծության տակ (կամ ծանոթության մեջ) նշում ենք այն ձեռագրի համարը, թերթը և գրչության տարեթիվը, որտեղից քաղված է տվյալ բանաստեղծությունը:

ՀԱԿՈԲ ԱԿՆԵՑԻ

## ՅԱՂԱԳՍ ՍՈՒՐԿՈՒՆԻՆ, ՈՐ ՅԱՒՈՒՐՍ ՍՈՒԼՏԱՆ ՄՈՒՐԱՏԻ ԵՂԵՒ

Յայտնեմ ձեզ իրս ժամանակի,
Որ կատարէր մերում ամի.
Սուլտան Մուրադն, յաղթէն տաճկի,
Սուրկուն արար յԸստամպօլի։
Արձակեցաւ պատերազմի՝
Զդէմս իւր եղեալ յարեւելի,
Ընդ հրապաշտ արքայն Պարսկի,
Որ շահ նոցա Սեֆի ձայնի։
Կեսարիայ երբ հասանի,
Որ Կապադովկիայ անուանի,
Կողմանս նորա հայեալ լինի,
Գիւղս տալ ի յաւերի։
«Ո՞ւր են, հարցեալ, մարդիք սորի,
Որ շինութեամբ չէ այս տեղի»։
Նորա ետուն պատասխանի.
«Կնացեալ, ասեն, յԸստամպօլի»։
Բանս գրեաց ի հրովարտակի
Առ պահապանն Բուղանդի,
Զի որք եկեալ յԱնատօլու՝
Փութով ի տեղիսն առաքեսցի։
Ի սուրհանդակ զհրովարտակն ետուն
Եւ յԸստամպօլ փութացուցին,
Առ պահապանն քաղաքին,
Վաղ-վաղ կատարել զբանս գրին։
Էր խայմախամ Պայրամ փաշան,
Որ ունէր հուքմ և հրաման,
Զի վեզիրն ի մարտ էր ընդ ինքեան,
Սայ էր կացեալ նորա փոխան։
Հազար ութսուն և չորս թիւ[ն] էր,
Մայիս ամսոյ տասն և ինն էր,
Օրն չորեքշաբթի անուանէր,
Որ հրովարտակն նա հասանէր։
Յորժամ որ նա գիրն եբաց,
Ետես զպատճենն, որ կայր գրած,
Ասաց՝ որպէս իրք հրամայեաց,
Մինչ ընդ թշնամիսն մարտ չէ մտած.
Լինէր նմա զգիմի ունել,
Պարտել զթշնամիսն և յաղթել
Եւ գալ յաթոռ իւրում նստել,
Ապա թէ զայս բանս կատարել։
Իսկ թագաւորն էր սաստիկ գրել,
Զբանըն չկարաց այլայլել,
Շուտով զհրամանն ետ կատարել,
Զերեք ազգն քաղքէն հանել։
Հրաման արար մունետիկի,
Ազդարարել մէջ քաղաքի,
Մինչև քանի օր որ լինի,
Բաստանամից եկեալ ոչ ոք զացի։
Գուժն ի բերան մունետիկին,
Ըստ կիտակուլ մարգարէին.
Նա քարոզէր զբան արարչին,
Սա՝ զհրամանս իւր արքային։
Աբեթացիքն, որ Հայք ասին,
Եւ Սեմայ ազգին, որ Յոյնք լսին,
Եւ Տաճիկք՝ զարմը Հագարին,
Որք յարեւելից եկեալ էին,—
Յորժամ լուան զդրօթն զայն,
Միջարեկան ամենեքեան.
Շուկայքն ամէն խափանեցան,
Կրպակից դրունք փակեցան։
Ելեալ յերկիրսն ցրուեցան
Եւ ի գաւառս պանդխտացան,
Որպէս երգէ մարգարէն այն,
Դաւիթն՝ ընտրեալ աստուածաբան։
Զի բաժանեցան եղբարք-քուերք,
Որոշեցան զաւակք—մօրէ,
Զատս կացին որք ի յարակցէ,
Եւ բարեկամք՝ բարեկամէ։

Դստերք առ հարս իւրեանց լային,
Թոռունք առ հանիկան ողբային.
«Մեք զինչ առնեմք յօտար երկրին,
Որ զմեզ խաբիս երկիր տանին։
Զի մեք ննաք մէջ քաղաքի,
Ոչ տեսաք զերես արևի,
Որպէս ապրիմք գիւղամիջի,
Որ և չգիտեմք զգործ երկրագործի»։
Ծնօղք յորժամ զայս լսէին,
Սիրտքն առաւել ճմլէին,
Որպէս քիրչօք քերեալ մարմին,
Բացախ արկցեն վերայ վիրին։
Զի էր կսկիծըն նոցա մին,—
Որ բնակութեանց արտաքսէին,
Յարժամ և զայս տեսանէին՝
Եւս քան զեա մորմոքէին։
Այլ և փեսայացուք բազումք կային,
Որ հարսնացուքն յայլում էին,
Սակս չզատելոյ միմեանց զնային,
Զհարսանիսն առ առնէին։
Այսօր նոցա պսակ դնէին,
Վաղիւ ճանապարհ ձգէին.
Փոխան յուրախութեան տեղին՝
Սգով ըզսիրտ նոցա լնուին։
Հարսունքըն՝ զքօղս պատառէին,
Փեսայք՝ զթագս յերկիր հարին,
Աղխազարդ կական բարձին,
Զի ի սիրելեաց բաժան կային։
Եւ անարգել կանայք զնէրս փեսին,
Արիւնախառն արտասուեցին,
Հող զգլխով արկանէին,
Զի զյուր երթալն ոչ գիտէին։
Յղի կանայք վայրս տային,
Ստնդիայք զնոյն երկրորդէին,
Ոմանք զմանուկս ձգէին,
Ըստ հրամանի տեառն բանին։
Զի ոմն երթայր Նիկոմիդայ,
Ոմն գնայր Բութանիայ,
Ոմն ձգէր Կեսարիայ,
Այլք փութային Դաղատիայ։
Յեւդոկիայ և Սեբաստիայ,
Որ և միմեանց են մօտակայ,
Ի Տիւրիկէ քաղաք որ կայ,
Յերապօլիս և ի գիւղս նորա։
Դարանաղեաց և յԵրզընկան,
Թէոդուպօլիս եւ զնան,
Այլք՝ մեծ քաղաքն Բերիայն,
Տիգրանակերտ 'ւ Եդեսիայն։
Գիւղք և քաղաք, որ հետ նոցին,
Լցան նոքա ամենեքին,
Այլ ճանապարհի թէ զինչ կրեցին՝
Է՛ զիտելի առեղծօղին։
Շատք ցամաքով ընթանային,
Եւ շատք՝ նաւով Պոնտոս զնացին.
Որք ոչ տեսեալ զափըն ծովին՝
Վարանէին վերայ նորին։
Այնկոծմամբ և տատանմամբ
Գնացեալ Պոնտոս հասանէին,
Զնաւահանգիստն անդ առնէին,
Անտի յերկիրսն ցրուէին։
Իսկ ո՞ պատմէ զաղէտ սոցին՝
Ըղձալու և ըղցամաքին,
Բայց թէ մաքուրն Երեմիայ,
Որ ողբ երգէր յԻսրայէլին։
Յորոց միջոյ փրկեաց զիս տէր,
Որ քաղդէացոց նման էր.
Լեզու չբաւէ զաղետս պատմել,
Զի տեսողաց սիրտն ճմլէր։
Զի ժամանակն էր Յունիսին,
Որ տօթոյն կայարք հալէին.
Հովանոցի կալ չկարէին,
Զանարգելս ի տանց արտաքսէին։
Ի մեր մեղաց եղեւ բանս այս,
Զոր և խօսեցաւ Եսայեաս.—
Որք փախիցեն ծերոյս վիմաց,
Անկցին դարձեալ ի խորս առաց։
Ծերոյ վիմաց էր մեզ Ըստամպօլ,
Մեք բնակեաք արձակ և պօլ,
Զպահելով զոհեանն բան՝
Ընկեց ի խորխորատ 'ւ ի կաւ։
Զառկու բանիկս ի յոռ հանի
Անիմաստ դպիրս Ակընցի,
Զանունս յիշման չեմ արժանի,
Այլ յառաջագրէն ծանիցի...[1]

Ձեռ. № 1113, թերթ՝ 209բ—211ա.
ժամանակ՝ 1618—1662 թվ.

---

[1] Սկզբի տները հորինված են ակրոստիքով. «Յակոբի է»։

Ծանօթութիւն.—Հակոբ Ակնեցին մեկն է վերևում նկարագրված աղետից փրկվածներից։ № 1113 ձեռագիրը, որում կա վերևի ողբը, Հ. Ակնեցու ինքնագիրն է։ Այդտեղ հիմնականում ամփոփված են մեկնություններ, որոնցից բացի՝ կան նույն Հ. Ակնեցու մի քանի այլ գրություններ և հիշատակագրություններ։ Այսպես օրինակ.

ա) Թ. 113ա «Պատմութիւն յաղագս առնելոյն տաճկաց զսուրբ Նիկողայոս եկեղեցին ի ձեռաց հայոց...» (1627 թիվ)։

բ) Թ. 116բ «Պատմութիւն նոր վկային Քրիստոսի և սրբոյն Գաբրիէլի» և այլն։

Դրանք նույն թեմային են վերաբերում, ինչին նվիրված է ողբը, սակայն այստեղ հայերի կրած այլ տառապանքներն են նկարագրված։ Բոլոր դեպքերին ականատես հեղինակը տվել է կոնկրետ դեպքերի նկարագրություններ։

Ինքը Հակոբ Ակնեցին ապրել է ԺԷ դարում։ Ձեռագրի 293բ թերթում կան որոշ տվյալներ իր մասին, բայց դրանք ջնջված են, ու, ինչպես երևում է, նշված են եղել իր ծնողները, կինը, և ուրիշ հարազատները. կարդացվում են Հովհաննես և Մարտիրոս անունները։ Այդ հիշատակարանի ամենից պարզ կարդացվող տողերն են.

«Եղև ստացումն սորա ՌՂԷ ամի, յորում յաւուրս մեռաւ Սուլտան Իպրահիմն և նստաւ Սուլտան Մուհամատն թագաւոր յՍտամպօլ»:

Հ. Ակնեցու ընդօրինակած ձեռագրից է նաև № 188 ձեռագիրը, որը չնայած իր բովանդակությամբ առանձին ուշագրավ արժանիքներ չունի, բայց կարևոր է նրանով, որ նկարազարդված է գրչի կողմից։ Այսպիսով կարող ենք ասել, որ Հակոբ Ակնեցին ոչ միայն բանաստեղծ է, ժամանակագիր, գրիչ, այլև նկարիչ: № 118 ձեռագիրը նա ընդօրինակել և զարդարել է 1643 թվին Կ. Պոլսում։ Այս ձեռագիրն ուշագրավ է նաև յուր հիշատակարանով և հիշատակագրություններով (100ա, 449բ, 471բ, 515բ)։

Հակոբ Ակնեցու մասին կարևոր տեղեկություններ կան Տաշյանի կազմած ձեռագրաց ցուցակի 496–97 էջերում։ Այստեղ նկարագրվող № 180 ձեռագրի վրա 1647 թվին աշխատել է Հ. Ակնեցին՝ որպես վերանորոգող, կազմող, ծաղկող, թողնելով այսպիսի տողեր.

«.. Յիշեցէք զվերջի ստացող սորա և նորոգող զվերայաառացեալ զԱկընցի Յակոբ, և զպատուելի հայրն՝ զմահտասի Վարդաս և զմայրն՝ զմահտասի Շաքարան, և զզաւակսն իւր՝ զհանգուցեալսն առ աստուած՝ զՅովաննէսն, զՄկրտիչն, զՍտեփան և զկենդանիսն՝ զՅովաննէսն, զՄարթան և զկողակիցն զԳոհարն և զամենայն արեան մերձաւորսն»:

Այս հիշատակարանից տեղեկություններ ենք ստանում նրա հարազատների մասին։ Բացի դրանից, այդ հիշատակարանի միջոցով կարողանում ենք մոտավոր գաղափար կազմել նաև հեղինակի ծննդյան տարեթվի մասին։ Եթե 1647 թվին նա այդպիսի ընտանիք ուներ, ապա հավանաբար նա պիտի ծնված լիներ 1600-ական թվերին։

Վերևում նշված «Պատմութիւն նոր վկային... Գաբրիէլի» վարքաբանությունը վերաբերում է 1662 թվի սեպտ. 17-ին։ Նահատակը Գաբրիել Ղալաթացին է, որին թուրքերը կախել են Կ. Պոլսում։ Հակոբն ականատես է եղել այդ դեպքին (այդ վկայաբանությունը տպված է «Հայոց նոր վկաներ»-ի 484—87 էջերում)։ Երևում է որ հեղինակը 1635 թվի «սուրգունը»-ից հետո վերադարձել է Կ. Պոլիս։

Այս բանաստեղծության մեջ նկարագրված է հայ ժողովրդի միջնադարյան արյունոտ պատմության էջերից մեկը՝ որը տեղի է ունեցել 1635–1636 թվերին, թուրք-պարսկական պատերազմների պատճառով։ (Որոշ մանրամասնություններ տես Չամչյան «Պատմութիւն հայոց» Գ. 617—618։ Ավելի մանրամասն՝ Գար. Այվազովսկի—«Պատմութիւն Օսմանեան պետութեան» 1—88)։

## ՂԱԶԱՐ ԲԱՂԵՐ ՕՂԼԻ

### Ի ՎԵՐԱՅ ՆԱԴՐԻՆ՝ ՎԱՍՆ ՏԱՌԱՊԵԱԼ ԱԶԳԻՆ ՀԱՅՈՑ

*Աստուած, դու մեզ մին ճար արայ,*
*Ճան՝ թամամ աշխարհ այ ուզում,*
*Աշխարհ քանդում՝ վարայ-վարայ,*
*Ողջ հազար-հազար այ ուզում։*
*Հազարով այ ուր մաթլաբն,*
*Քաշում այ սատրին հասաբն,*
*Ցիրուր տալման չար քթաբն,*
*Միջիցն ղոֆտար այ ուզում։*
*Ուզի գովտարն յիմանայ,*
*Սաֆարն դար Համաստանայ,*
*Չինուշտայու Հնդստանայ,*
*Նոր լալ ու գոհար այ ուզում։*

*Լալ ու գոհար ու մարգարէն,*
*Կապում այ բարխանայ բարէն,*
*Մալն բշխէց երեք տարէն,*
*Տանէն չափ թոմար այ ուզում։*
*Թոմար-թոմար տսում բարաթ,*
*Քանդում խոշխշին բռահաթ,*
*Դէմն էլ տաում այ մուստաբաթ,*
*Դէմն էլ խունավճր այ ուզում։*
*Ծունավարին փարքանդ տում,*
*Մարդի դարդի չի յիմանում,*
*Ցամէն տեղէ պուլ այ տանում,*
*Մին-մին էլ նօքար այ ուզում։*

Ղուլի նօքարի չունի փրաթ,
Էլ ոչ հալ կայ, էլ ոչ դուաթ,
Ոչ պղինձ նթող, ոչ արկաթ,
Բոլորում այ, ամէնն [այ] ուզում։
 Բոլորում այ, քաշում ուրն,
 Բընադամ դրայ չհուրն,
 Մէջ այ մամոն, տալման թուրն,
 Բէզրաս խօշ քնար այ ուզում։

Ուզում այ շալ ու մահուդն,
Կտրում այ աշխարհիս ումուդն,[1]
Թուրքին ու Խայլին ու Ջհուդն՝
Ոզջին էլ դարբէզար այ ուզում։

Ձեռ. № 5954, թերթ՝ 83ա-բ,
ժամանակ՝ XVIII դ.

ՂԱԶԱՐ ԲԱՂԵՐ ՕՂԼԻ

* * *

Ասիմ.—Նազլու գիլբար, չուն բէզամաղ ես.
Ասու[1].—Վեր առ, ածիր, սա՛զ արայ, սիրուն.
Ասիմ.—Ուստուսխաթ տուր, որ քեզ հետ խոսեմ.
Ասու.—Ասայ, լսեմ, հա՛զ արայ, սիրուն։

Ասիմ.—Ինձ երևէ կլակա, բոցըա.
Ասու.—Մայլամ կուտամ՝ լուանայ խոցըդ.
Ասիմ.—Ուստուսխաթ տուր, որ մոնեմ ծոցըա.
Ասու.—Մին դամ ընթիմնն արայ, սիրուն։

Ասիմ.—Քոյ սերս ինձ կու ըսպանի.
Ասու.—Ըսպանիլ չէ, խելքդ կու տանի.
Ասիմ.—Քեզ շինել տամ ոսկի մատանի.
Ասու.—Բաս ակըն՝ ալմաղ արայ, սիրուն։[2]

Ասիմ.—Ուշս կորած, խելքս ցրված է.
Ասու.—Երնակ էնդուր քեզ[ի] տված է.
Ասիմ[2].—Ջ՞ուն ծամերս մհրհորած է.
Ասու.—Վեր առ, սանդրիր, մա՛զ արայ, սիրուն։

Ասիմ.—Աչկերս՝ ծով, պռընթիս՝ նով է.
Ասու.—Բեղնից դեյրու շատ մարթ կու գովէ.
Ասիմ.—Ասայ, անանեմ՝ քոյ եարն ո՞վ է.
Ասու.—Բաղր Օղլի[3] Ղազարն այ, սիրուն։

Ձեռ. № 3263, թերթ՝ 113ա,
ժամանակ՝ 1728—1751 թվ.

ՂԱԶԱՐ ԲԱՂԵՐ ՕՂԼԻ

* * *

Մարդիս ալալ բազարն տեսմ
Իր կողակից եարին վերայ,
Ոչ թէ մինըն, հազարն տեսմ՝
Խամամի աշխարհիս վերայ։
 Առաջի բազարն մահմուդ այ,
 Մարդի սրտի տուն այ, դութ այ,
 Ալմաղ այ, եաղութ, զմրութ այ,
 Գնոչ այ՝ գոհվարի վերայ։
Յետինն բեադալաթ այ,
Փացախ այ, դոր տեսմ մա՛թ այ,
Մառջան չի, քարբար չի, սա՛թ այ՝
Գլուձէ քամարի վերայ։

 Առաջինն թարքայ եայ, ջուշ այ,
 Խասած նուրար, փիշտաս նուշ այ,
 Հարըն ատավէլ անուշ այ՝
 Ըսեհան—սուստանբարի վերայ։
Յետինն այ իվէլի դիքայ,
Ղալի դօշակ չի, թաղեք այ,
Անաէր, թամաշկած ծաղիք այ՝.
Ընկած այ ճանապարի վերայ։
 Առաջինն մեխակ այ, ջավզ այ,
 Ծաղարօվ մարմարէ հավզ այ,
 Յինքն՝ չիման, դօվըն՝ սավզ այ,
 Սաան աղբուր այ՝ սարի վերայ։

---

[1] Ասու. բառը այստեղ և երբեմն տարբեր գրված է «ասավ» ձևով, միօրինակության համար գրում ենք «ասու»։

[2] Ասու.—Բաս ակըն ալմաղ դուն արայ, սիրուն.

[1] Ձեռագրում՝ ումիտն

[2] Ձեռագրում՝ Ասու

[3] Ձեռագրում՝ Ողլի

Յարին ինչ մարդ որ կասու,
Յախերըն կընկանի զարու,
Յէնց գլուխս մին պըտոր տառ՝
Խարարայ զուզարի վերայ:
Առաջինն բարատու ծառ այ,
Գարնան ծընած թազայ զառ այ,
Կինչ անուլ աստղն պայծառ այ՝
Շամս ու Ղամարի վերայ:
Յետինն է գէր բիվայ ղանայ,
Բաս Սաղահէլի նման այ,
Սթարէն քօռ ու խափան այ,
Մութն այ՝ խավարի վերայ:
Առաջինն ուրախութիւն այ,
Զուխան՝ մին միս, մին արուն այ,
Մէլ այ, մարդի՝ սրտի սուն այ,
Բար ունի զարարի վերայ:
Յետինըն արժան չի ծացի,
Նման այ չափսաստ սըզցի,
Մարդի սիրտ էնպէս կըխոցի—
Դար նշանըն՝ տամարի վերայ:
Առաջինն մարգարիթ այ, ղան այ,
Մարդ պլոլ՝ զաղըն յիմանայ,
Ալըրմաթ այ, գին այ, իման այ,
Ջան այ՝ ըխափարի վերայ:
Յետինն օվ որ ընթզար այ,
Յալրաթ ուր ջանէն բէզար այ՝
Մէնաթ այ, ամալ այ, զար այ,
Ձիքր, զուս այ՝ զարի վերայ:
Առաջինն նոր հէշիլ, նոր համան այ,
Բլօր շէշայ, չինի ․աս այ,
Ափսոս, մաթլապիս չհասայ,
Մուշտաղ ամ դիտարի[1] վերայ:
Բաղէր Օղլիս զարաէրս բացի,
Էստավ երկու զուռ գնացի,
Առաջինն ու յետինըն ացի,
Ուրէնց ջարդ է քարի[2] վերայ:

Ձեռ. № 5954, թերթ՝ 40ա—բ, ժամ. XVIII դ.

Ծանոթություն.—Ջուղահայ ականավոր երգիչ Բաղեր Օղլի Ղազարն ապրել և ստեղծագործել է 18-րդ դարում: Հորինել է պատմական, կենցաղային, սիրո և այլ թեմաներով բազմաթիվ երգեր: Նրա կյանքի և գործունեության մանրամասնությունները դեռ պարզված չեն:

Մեր Մատենադարանում պահպանվում են Բաղեր Օղլու հետևյալ բանաստեղծությունները.

ա) «Աստուած, դու մեզ մին ճար արայ...»
բ) «Ասիմ.—Նազլու դիլբար, չո՞ւն բէզամաղ ես...»
գ) «Մարդիս ավալ բազարն տեսմ...»
դ) «Աստուծոյ սիրէլի յուսով հաւասով...»
ե) «Հայր և որդի, հոգի սուրբն ամբր եղավ...»

Առաջինն ինչպես նրա, նույնպես և մեր միջնադարյան պոեզիայի, ամենաարժեքավոր գործերից մեկն է: Այստեղ երգիչը բողոքում է Նադիր Շահի բարբարոսությունների դեմ, ցույց տալով ինչպես հայ նույնպես և հրեա ու ադրբեջանցի ժողովուրդների կրած անասելի տանջանքները:

Չնայած այս բանաստեղծության մասին, հատվածների մեջբերումով, մեկ անգամ խոսվել է, բայց և այնպես բանաստեղծությունը մինչև օրս մնացել է մեր գրականագետների ուշադրությունից դուրս:

Երկրորդ երգն ընդօրինակված է համարյա 1751 թվին, կամ դրանից մի քանի տարի առաջ (ոչ վաղ 1728-ից)՝ Հովնաթան և Հակոբ Նաղաշների տաղարանի վերջում, անգրել մնացած մի էջի վրա: Դա սիրո գեղեցիկ երգ է, որից առաջին անգամ տեղեկանում ենք Բաղեր Օղլու (Բաղերի որդու) անվան հետ.

[1] Ձեռագրում՝ դիտարին:
[2] Ձեռագրում՝ քարին:

«Ասիմ.—ասայ, տեսնեմ՝ քոյ եարն ով է.
Ասու.—Բաղր Օղլի Ղազարն այ, սիրունս»:

Երրորդ բանաստեղծությունը հորինված է կենցաղային թեմայով և ունի նաև որոշ կենսագրական տեղեկություններ: Պարզվում է, որ Բաղեր Օղլին ամուսնացել է երկու անգամ: Այս բանաստեղծության մեջ նա զիլույկ պատկերներով և համեմատություններով գովում է իր առաջին կնոջը և պարսավում երկրորդին:

Չորրորդ բանաստեղծությունը հորինված է յուր ժամանակի վարդապետ Աստվածատուր Ֆահրապատցու (Աղաւնի մականվամբ) մահվան առթիվ: ունի ուշագրավ խորագիր. «Ի վերա Աղաւնի Աստվածատուր վարդապետին ասացեալ ումեմնէ անուսումն ի գրոց, ռամիկ, գեղջուկ յառնէ»:

Կարելի է ասել, որ այս բանաստեղծությունը հորինված է 1745—1750 թվերին[1]: Դրանից մի քա-

[1] Աստվածատուր Ֆահրապատցին մեռել է 1745 թվի հունվարի 17-ին: Սակայն բանաստեղծությունը հենց այդ թվին չի հորինված, այլ հետո, որովհետև երգիչը խոսելով նրա հաջորդի մասին ասում է.
«Ինչպես ասացին՝ Պօղոս վարդապետն անէ».
Իսկ վերջինս նշանակվել է Ա. Ֆահրապատցու փոխարեն միայն 1748 թվին (Մանրամասնությունները տես «Ազգապատում» 2956, 2981 և այլն): Աստվ. Ֆահրապատցին հայտնի էր որպես ուսուցիչ, հրատարակիչ: Նրա աշակերտներից մեկն է եղել նաև բանաստեղծ Բաղդասար Դպիրը.
«Ըսպահանայ մինչև Ստամբոլ մանթ ունէն...»
Գրում է Բաղեր Օղլին՝ նրա մասին:

նի տարի առաջ էլ հորինված է Նաղաշ Շահի դեմ գրված բանաստեղծությունը։

Հինգերորդ բանաստեղծությունը հորինված է կրոնաքարոզչական բովանդակությամբ. բովանդակությունն ընդարձակ է։ Այստեղ հեղինակի անունը հիշատակվում է այսպես.

«Էն օրն դու Ուռնայու կայն զառ՝
Բաղեր Աղազին ողորմատ».

Այս փաստի շնորհիվ առավել անկասկած է դառնում Բաղեր Օղլու անվան Ղազար[1] լինելը։

Վերոհիշյալ բոլոր բանաստեղծություններն էլ (բացի երկրորդից) գտնվում են նույն ձեռագրում (5954), որը գրված է ԺԸ դարում և իրենից ներկայացնում է տարբեր նյութերի մի խայտաբղետ ժողովածու։ Դա պատկանել է հավանաբար մի ջուղայեցի վաճառականի, որը կապեր է ունեցել Պետերբուրգի, Մոսկվայի, Աստրախանի և այլ քաղաքների հետ։ Այդ անծանոթ վաճառականը գրի է առել այդ ձեռագրի մեջ, նաև ռուսական ժող. առածներ, երգեր և այլն[1]։

## ԱՆՀԱՅՏ ՀԵՂԻՆԱԿ

* * *

Անձինք առեմ հավքերգական,
Սարազգաստ առնէ զանազան.
Բարեաց՝ լուեալ՝ ալ[զ]են զինքեան,
Ծուլքն՝ տեսեալ՝ հայհոյանք տան։
Բազմաց զգլուխն մեծացուցեալ,
Ի դատաւոր համեմատեալ,
Երթեալ կանգնին մօտ դրակալ,
Զկարեն կարդալ զ«Յայնժամ թողեալ»։
Գլուխ ոմանց է բազմամազ,
Ձերդ զքառամեայ չօպկի նոխազ,
Ի պաշտամունս երթայ խիստ վազ,
Ոչ շարական գիտէ 'ւ ոչ խազ։
Դաս մի հիւսեն զմազն պէս-պէս,
Թէ վարսաւոր եմ քան զորմբէս,
Զփորն լնու ճաշ և խրէց,
Զգիտէ կարդալ զ«Ասէր այսպէս»։
Եւ ոմն արկեալ չուխայ զիւրև,
Զձեռն և զԹեն արկեր ներքև,
Զպիրքն դամէն կասէ «և», «և».
Երկու երեսն լինի սև։
Զանգակաձև շարեալ կոճակ,
Ի յառմանէ փորն է դատարկ.
Յորժամ մըտնուն ի պատարագ,
Յայնժամ դոչէ քան զյաւանակ։
Է ոմն ագեր մօս և մաւի,
Ի ժամատեղն ասէ. «գլուխս կու ցաւի»,
Գուտուկ մի ճաշ փորայն չըաւի,
Կասով առնէ զպաշտման դաւի։
Ըմպեն ոմանք պէս-պէս զգինին,
Ի ժամատեղն կու քընին.
Յականջ չառնուն զպատասխանին,
Նոցա բաժին հուր գեհեննին։

Թողեալ են զկարգ արեղութեան,
Ծալկեն խաչիկ մի և կանգան,
Զերեսն աւեր են քան զկեսան
Եւ զիւրեանց կարգն հայհոյել տան։
Ժողովս մեծ հաւնին մօտ սուփ,
Զփորն շինեն համբխանայ դուփ,
Գրոց կարդալն է քան զկոր բուփ,
Զկարէ բաժնել զՍիվաէ զՈւսուփ։
Իսկ ոմն ունի կարմիր դաստամալ,
Իբրև դչերէփ է իւր գըդալ,
Յորժամ ակնաւ «Յամենակալ»,
Ոտքն քան զուռ աննու զոզալ։
Լօշկի ունըփ ոմանց կարմիր,
Բընաւ չասէ զ«Մի նախանձիր».
Զփորն լնու կաթնով ամիր,
Զկարէ կարդալ զ«Մի երկընչիր»։
Թանձրաձև դանակ երկայն,
Ենգլիշարոյ կերպի նըման,
Կախեն վերայ աջոյ ձըռանն,
Զոր յՍլամթա սահմանեցան։
Ծամն ձըգեն կամ ի զընդան,
Վիզն կապեն իշու երկան,
Զարնեն հազար բիր նըմայ զան,
Զկարէ առել զ«Նեղութեան»։
Կարմրադայն հաղնէ կօշիկ,
Զմորուսն սանդրէ, լինի քօշիկ,
Զփորն լնու սպիտակ լօշիկ,
Ի գիրք կարդալն է կոր բուշիկ։
Հագեր սպիտակ շապիկ բեհեզ,
Ունի բազում աչխար և եզ,
Բարուքն հպարտ և ոչ է հեզ,
Զգիտէ առել զ«Օրհնեմք զքեզ»։

---

[1] «Աղազ»-ը՝ «Ղազար» անվան տեղական գործածական ձևն է։

[1] Բաղեր Օղլու մի երգն էլ տես Գ. Թարվերդյան «Հայ աշուղներ» 11։

Ձևաց մատնիկն է ձոյլ արծաթ,
Ինքն չարժէ կոզով մի յարդ,
Եւ թէ ասես. «այս ո՞ր չարաթ»,
Գոյնն լինի քան զսև երկաթ։
Ղամբար մտաց ամանց չիջեալ,
Զմակացութիւն զրոց թողեալ,
Արուեստ մարթոյ են բառացեալ,
Յարքայութեան երկնից զրկեալ։
Ծիւադարար եղեալ ամանք,
Բնակին ի գեղ, թողեալ զվանք,
Զկարգիկն իւրեանց տան բամբասանք,
Երթան նոքա ի չար տանջանք։
Մըսին հագնին սև և գեղին,
Շրջին հպարտ ի մէջ գեղին,
Զձեռն անցուցեն վերայ բեղին,
Յիշուեց չահին իւր օրհնօղին։
Յուսըն պահուճ մօտ ծիրանին,
Զգիտէ առել նա զՃերանիշ-ն,
Զձեռն դնէ դէմ բերանին,
Զթիկունքն տա ուսան գերանին։
Նաև թողեալ ամն զիւր մայր,
Քոյր և մայրգիր բռնէ օտար,
Սուրբ կանոնագիրքըն կոչէ վատթար,
Եւ անիծէ զնա չարաչար։
Շատոնց թողեալ զիւր հալալ կին,
Երթեալ պղծէ զայլ անկողին,
Այնք կայծականց վերայ նիրհին,
Անքուն որդանցըն կեր լինին։
Ոմն ստացեալ է երիվար
Եւ կու պաշտէ զնա անդադար,
Նըստի վերայ զատազարար.
Նորա տեղին է չար խաւար։
Զանեն եթէ տէրըն տէրանց,
Այն որ նըստերն յաթոռ փառաց,
Ի յաւանակ եղև նըստած,
Նոյնպես լինել մեզ քարոզեաց։
Պաշտեն ոմանք բդյորովայն,
Շինեն զմարմինս բուծօղ որդան.
Նոքա զընան ի հուր գեհեան,
Ըստ օրինակի չար մեծատան։

Զընար առեալ են և տամբուր,
Ստացեալ պէս-պէս ոլեհ և սուր,
Նոցա երեան լինի մուր,
Երթեալ տանջին ի յանշէջ հուր։
Ռամկացն ես տաց զերեսս իմ կոխ,
'Նոցա լինիմ միշտ դոհացող,
Յարժամ ժողով լինի 'ւ ամբոխ,
Նոքա լինին մեզ խրատող։
Սպիտակ մորուս ու քան զկոճ
Դեռ կու խօսին անվայելուչ,
Յար-յանապազ ցանկան կընոջ,
Երթեալ շնան քան զկեռպուչ։
Վարդապետաց հոյլքըն կընաա,
Սիրեն զգինին 'ւ առեն զիրըրատ,
Արծաթասէր են և ժըլատ,
Բնաւ չկամին տեսնուլ զաղքատ։
Տիրանք, զզջմամբ դառնամք չարեաց,
Մինչ ժամանակ գոյ ի ձեռաց,
Տուայտելով Պօղոս զոչեաց.
Մի իւ իւիք փառս տայք մեզաց։
Ռամքըն որք ունողք են այս չարեաց,
Էին անդարձ յայն յամառած,
Թէ անմարմին, թէ մարմնացած,
Պէս-պէս տանջեաց զնոսա աստուած։
Յաւամամբ զզեան յերկնից ձգեաց,
Զկայեն եօթնիւք պատուհասեաց,
Զպառնիկան համայն ջրասուզեաց,
Յաշտարակին զլեզուս խառնեաց։
'Ի իւր տանցողքն հրով-կիզեաց—
Եւ զՓարաւոն չարեօք պատժեաց,
Սարեկ երկրէն զՔանան խլեաց՝
Եւ զԻսրայէլ ի նմա տընկեաց։
Փառք աստուծոյ տուք ի բարձանց,
Զի ի մէնջ հանցէ զաւրս քարայած,
Աստ փրրկեացէ ի փորձանաց,
Անդէն տանէ ժառանդ փառաց։
Քանզի չասէք մեզ խև մոլած,
Թէ զինչ առնէ զգեստ չար մարդկաց,
Հոգւով սրբով Սիրաք ասաց,
Թէ զգէստ արտին կրից յաւելած։

Ծանօթություն.— Սույն բանաստեղծությունը կա հետևյալ ձեռագրերում (ամենուր՝ անխորագիր)

1. № 1424, 3ա—3բ. 1620 (տողը որոշեա գրչափորձ՝ բայց էլի XVII դարի գրչությամբ. վերջը թերի. կա՝ Ա—Ծ)։

2. № 2292, 264ա—265բ. 1624 (կան միայն Ա—Զ-րդ տները)։

3. № 1, 121ա—122ա. 1632—33 (վերջը թերի. չկան Ծ—Ք-րդ տները)։

4. № 4618, 161ա—161բ և 168 ա, XVII դ. (լրիվ)։

5. № 7703, 60ա—63բ, ԺԷ. (լրիվ)։

6. № 5387, 13բ—16ա, XVII դ. (8 տող)։

Տպագրության համար հիմնականում օգտագործեցինք №№ 4618 և 7703 ձեռագրերը։ Այդտեղ աչքի

ընկնող տարբերություններ չկային: Նշած փոքրիկ տարբերություններից ի նկատի առանք բնագրի ընթերցվածքները: Հեղինակն անհայտ է (հավանաբար ԺԶ—ԺԷ դար):

№№ 1424, 2292 և 1 ձեռագրերի մեջ այլ ձև ունեն հետևյալ տները.

«Ըմպեն ոմանք գուարթ զգինին,
Ի ժամանեղն հասեալ քնին,
Ի զարչ հասոյն անդն ալին,
Որպէս Բէլա մոգան լինին:
Թմբուկ սիրեն և լաւ չօգուր,
Սպառազին ալեխ և սուր.
Զերես հոգւոյն առնեն զէրդ մուր,
Նոքա կերթան ի յանդէնջ հուր...
Ի յաւմանէ ոմանք են փուչ,
Բայց յերախանս անդամնին գուճ.
Խանէն ըղճաշն և գեղին պուճ,
Քան զինչոյ գլուխ չինեն բըգուճ:

№№ 2292 և 1-ում մի քիչ այլ ձև ունի նաև հետևյալ տունը.

«Զեռաց մատնին ոսկի 'ւ արծաթ,
Ինքն նմանի հավքու նեկաթ.
Թ' ասեա «աէրաէր, այս ի՞նչ չարաթ»,
Շատացունի իբրև գերկաթ:»

ԱՆՀԱՅՏ ՀԵՂԻՆԱԿ

* * *

Առաջնորդք, դուք խանգարիչք,[1]
Որք տեսակաւ կեղծաւորիք,
Դուք իմաստնոց էք դայթակղիչք
Եւ անմտաց էք կողոպտիչք:
Օրինացն էք դուք քակտիչք,
Ժողովրդոց էք մոլորիչք,
Իրաւանց էք դուք թիւրիչք,
Արծաթասէրք և կապարիչաք:
Աշխարհաց էք աւերիչք,
Հոգւոց մարդկան էք խաւարիչք,
Քանասարի նըման գայլից
Եւ թիւնաւորք՝ նըման օձից:
Կերպարանեալ իբրև զգից,
Այնպէս պաշտիք ի համայնից.
Դուք բերան տեառըն կու կոչիք,
Ցափ բերանով կատակ խօսիք:
Զազրմութիւնն հարկիւ կուզեն,
Քան զփախատու կու պահանջեն,
Ըստ իւրեանց կամացն թէ ոչ առնեն,
Աշխարհավար կու հայհոյեն:
Լօտք նոցին կու ձանձրանան
'Ի ի հաւատոց կու թերանան,
Յարժամ նըստին ի դատաստան,
Քինախընդիր լինին մարդկան:
Որպէս ըզմեծ մարթոյ իշխան,
Սպանեալ կու տան հրաման,
Վասն փառացն իւրեանց համայն,
Թող կորընչին որդիք մարդկան:
Առին ըզվայն տերունական,
Որք սիրեցին զփառըս մարդկան,
Զի ոչ խորհին զահեղ ատեանն,
Այլ կու ջանան զհաճոյս մարդկան:
Անցին զհրաման տեառն արարչին,
Հողաթափ յոտն, ցուպ ի ձեռին,
Եւ ոչ բառնալ պղինձ ի գօտին
Եւ կամ երկու հանդերձս ունեն:
Վաճառականք լինին բանին,
Սուրբ մարգարէին այն զիւրագին.
Սուտ պատճառաւ փող հաւաքին
Եւ փափկացեալք՝ նովաւ պըճնին:
Ընդ բազմանալն ժամանային
Յոյժ կուրանան հոգւով ի նմին,
Այն անիծեալ ժանկահարիւն
Զինչ կամենան՝ զայն կու գործին:
Յարժամ յերկրէ յերկիր շրջին,
Զանունն և զձեռն կու փոխին,
Հեթանոսաց անուամբ կոչին
Եւ հաւատոյ կու կորընչին:
Հեծեալ ի ձի, նիզակ ձեռին,
Վահանն ի յուս, սուր ընդ մէջին,
Այսպէս է կարգ կրօնաւորին
Եւ կամ հրաման տեառն արարչին:
Առնուն զանուն վարդապետին
Եւ ըզպատուէր ձեռնադրօղին,
Բառնալ ըզխաչ տեառն ի յուսին,
Որ զչարչարանըն զուշակին:
Մոռանան զահ դատաստանին
Եւ զհամար տալն յաւենին,
Ի յաչս իւրեանց գերան ունին,
Ըզշիւղ եղբարցն հանել ասին:
Մէջ միամիտ ժողովրդին
Օրինապահ կու երևին
Եւ վարդապետ կերպարանին,
Դերասաճան անուամբ պարծին:
Ծանր բեռին մարդկան դընին,
Ինքեանք մատամբ իսկ ոչ մերձին,

[1] Ձեռագրում՝ հանգարիչք:

Օրինագիր քարոզ լինին
Եւ լսելիք միայն բանին։
Գողանան զմիտս պարզամբտին
Եւ ամբոխ կայ յիւրեանց սրբոյին,
Ցանդիմանչաց՝ գործոց նոցին՝
Թըղթով իւրեանց նըշաւակին։
Այն խըղճալի ժողովըրդնին
Ցայժ զարհուրին ի գրոյ նոցին,
Ցալով մարդիկք միջնորդ լինին,
Անուան կաշառս և արձակին։
Մայրս և եղբայրս և քոյրս բանին,
Կեղծիւք խօսին միշտ ընդ նոսին,
Ուտեն 'ւ ըմպեն, այլ և զեխին,
Մինչ յանդիման խայտառակին։
Նոր վարդապետք եղեն այժմոյս,
Որք խիստ սիրեն զփառս կենցաղոյս.
Ոչ են կըրթեալ ի վարս սուրբս,
Այլ լոկ անուամբ են գեաւրոյս։
Զի անհրահանգ են վարժեցեալ
Եւ ոչ ուսմամբ միշտ ճոխացեալ,
Այլ զպատմութիւնըն քարոզեալ
Եւ զմիամիտն զարմացուցեալ։
Երկու 'ւ երեք քարոզ ուսեալ,
Աստուածարան զինքեանս կարծեալ,
Հպարտ բնութեամբ յայժ փըքացեալ,
Գիտեն թէ յօդս են բարձրացեալ։
Ունին զձև մեծ բարունից
Այս խառվարար սուտ արեղից,
Առաջնորդաց անուն վեհից
Հեռի է ի նոցունց՝ երկիրս՝ երկնից։
Զի մեր Հայոց ազգս Արամից
Ոչ եմք ընարող նոցին բանից,
Այլ եմք նըման մեզ անասնից,
Ամօթ կըրեմք ի ճըշմարտից։
Զի չեն թաղեալ ըղհայրենին,
Այլ են որդիք չինականին,
Ի մեծութիւն երբ հասանին,
Ոչ ոք չկարէ խօսել ընդ նոսին։

Ձեռ. № 7703, թերթ՝ 73ա—75բ,
ժամանակ՝ XVII դ.

Ծանոթություն.—Սույն ձեռագրում առանձին բաժին են կազմում այս և նման մի քանի ուրիշ սուր քննադատող բանաստեղծությունները. դրանք են.

1) «Անձինք սահմ հաղներգական» (Տես սրանից առաջ տպվածը)։

2) «Դարձեալ մասունք այլ զանազան» (չենք տպում)։

3) «Ով եղբարք խոհեմագոյն» (Վասն թութունի, վաղուց տպված է)։

4) «Զականջդ բաց, զրանս լսէ» (տես Հակոբ Սսեցի)։

5) «Իրաւամբ ժողովրդոց պարտ է գրել» (չենք տպում)։

6) «Առաջնորդը, դուք խանդարիչք» (նույնն է)։

7) «Բանք ի Թըրիկ գըրոցն. Աստուած արդար» (վաղուց տպված) և այլն։

Որոշ առանձնահատկություններով 1, 5 և 6-րդ բանաստեղծությունները հիշեցնում են իրար, երբեմն էլ անոնիմ են և երևի մի հեղինակի գործ։

Այս բանաստեղծության այլ օրինակ չգիտենք։

ՀԱԿՈԲ ՍՍԵՑԻ

## ՎԱՍՆ ԳԱԽԱՐԱԿԵԼՈՑ ՕՐԻՆԱԶԱՆՑԻՑՆ

Զականջդ բաց, զրանս լսէ
Եւ ի միտ առ, ի թուղթ գրէ,
Թէ ինչ եղաւ ի Հայոց մեծէ.
Այ Հայոց ազգ, հայիֆ սէնի։
Դաւթա առածն կատարեցաւ,
Ճըշմարտութիւնն նուաղեցաւ,
Սուտ և եալանն առաջ ընկաւ.
Այ խարբերայ, հայիֆ սէնի։
Կիսոց դաշինքն ջրեցան,
Բազումք ուխտին վերայ չկեցան,
Այլ ձեռագիրն սուտ եղան.
Այ սուրբ երգում, հայիֆ սէնի։
Գաւրիարդներն իրար անկան,
Բասն բիւր եղև պարտքն ի յման,
Վէճն ու կռիվքն մաշեցան.
Այ սուրբ աթոռ, հայիֆ սէնի։
Այն անիրաւ նուիրակնուն՝
Տաճիկի բրախտով ձի կու հեծնուն,
Շարժմունքն ամէնն զէտ օսմանցուն.
Այ սուրբ մեռոն, հայիֆ սէնի։
Վարդապետքն այլ քարոզօղ չեն,
Ժողովրդեան կաշառք խնդրեն,
Այն որ չտայ՝ կու հալածեն.
Այ դաս ու քարոզ, հայիֆ սէնի։

Առաջնորդներն կանոնք չի բռնեն,
Կաչառքի համար կանոնք ծրեն,
Ձեռնադրածին հարցում չառնեն.
Այ ասափճան, հայիֆ սէնի։
Սեաղլուխքն թէ կամիս՝ տես,
Զամանց գզործն լաւ՝ թէ չլսես,
Ամենեցուն թէ մէկն եմ ես.
Այ սուրբ վեզար, հայիֆ սէնի։
Իրիցանք ոմանք որ կան,
Լիրբ և անզգայք 'ւ անբարտաւան,
Պատարագեն 'ւ են անարժան.
Այ սուրբ խորհուրդ, հայիֆ սէնի։
Երեսփոխանք ամէն թերի,
Լի են չարաւք, չունին բարի,
Օրէնքն նոցա ձեռքն գերի.
Այ սուրբ կանոնք, հայիֆ սէնի։
Սարկաւագներն կամիս՝ լսէ,
Շատք՝ իւրեանց գործոց վրայ չէ,
Զեկեղեցին մոռացեալ է.
Այ սուրբ ասափճան, հայիֆ սէնի։
Թաիֆ 'ւ իշխանք ոմանք լաւ չեն,
Ըզկաշառքըն արմաղան կոչեն,
Զաւօղին բոխտան դնեն.
Այ հարամխօռք[1], հայիֆ սիզի։
Կէսք ժողովուրդք գայթակղեցան,
Եւ այլք՝ զաւրէնսըն մոռացան,
Շատք՝ ըզհաւատքըն ուրացան.
Սուրբ աւազան, հայիֆ սէնի։
Աֆիան կընուն, թութուն խմեն
Եւ զող ու հացն ապականեն,
Ոչ կու վախեն, ոչ կամաչեն.
Ութանմազլար, հայիֆ սիզի։
Զամէնն ասիր, գքեզ Էր թողիր,
Զայլքն ի բաց թող 'ւ ի քեզ փակիր,
Սըրցի Յակոբ, ի քնոյ զարթիր.
Ե՛ս մեղաւոր, հայիֆ պէնի։

**Ծանոթություն.**— Սույն բանաստեղծությունը գտնվում է № 41 ձեռագրի 156բ—157բ թերթերում (XVII դ.) և № 8482 ձեռագրի 1բ—2ա թերթերում (1664 թ.)։ Տպագրելիս ի նկատի ունեցանք այդ երկու օրինակի լավագույն ընթերցումները։ Պետք նշել, որ տարբերությունները շատ քիչ էին։

№ 7703 ձեռագրում սույն բանաստեղծության մի այլ վարիանտը վերագրված է ոմն Գրիգորի։ Հիմնականում տարբերություններ չկան, սակայն Գրիգորին վերագրվածի մեջ կա մի տուն (նախավերջին տուն), որը բացակայում է սույնի մեջ և վերջին տան մեջ հեղինակի անունը այլ է. ահա այդ 2 տները.

Շատ ցեղ ու ցեղ զեղեր առնեն
Եւ թութունով գայն պատրաստեն,
Ապա առեալ ի բերան քարշեն.
Ով անամօթ, հայիֆ սէնի։
Զամէնն ասէր, գքեզ թողիր,
Զայլքն ի բաց թող 'ւ ի քեզ հայիր,
Նիրհեալ Գրիգոր, ի քեզ դարձիր,
Լի ես մեղօք, հայիֆ սէնի։

Հակոբ Սսեցու մի բանաստեղծությունն առաջին անգամ տպագրել է Կ. Կոստանյանը (Դ. պրակ 9—11)։ «Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Հալեպի»-ի 25-րդ էջում կարդում ենք. «Տաղ ազնիւ. Յակոբ վարդապետէ ի վերայ Բաղաքին Բուլղանղիոյ և է տուներն «Ղարաճէքի Ներկիզ»-ին, որի սկիզբն է.

Այս խաղ չափարան Յակոբայ լեզուէ,
Տէ՛ս, Ճէլէր խօսի, բախտ Կոստանդինէ,
Տաղ բայիրական Սորա խօսիլն է..

Նույն ցուցակի 62 էջում կա «Այ անգին գոհար»-ի մի այլ օրինակը, որը գրված է իր կնոջ մահվան կապակցությամբ։ Այդ երգի այլ օրինակները կան նաև մեր Մատենադարանում։ Բացի դրանից, մեր Մատենադարանում կան Հակ. Սսեցու նաև երկու ուրիշ (անտիպ) բանաստեղծությունները.

ա) Այս տաղ դուսակալն բեր Ակոբ լեզուն,
Տես, նեյլէր[*] տեսեր նա ի Ղարասուն...
(3411, 179, XVII դ.)։

Նկարագրում է Ղարասու ավանն՝ իր տներով, շուկաներով, ծառերով, եկեղեցիներով, կամուրջով, թռչուններով և այլն։

բ) Յայտնում բանից քոց լուսաւոր,
Առնէ զորգայրըն մառուր...
(3107, 137բ—139ա, XVII դ.)։

Գրված է ակրոստիքով («Յակոբ վարդապետ Սըսցս, խնդրէ Ծնեան էրէցս»)։ Այս բանաստեղծության մեջ ցույց է տրված, թե որ շարականն ով է հորինել։

Հակոբ Սսեցու կենսագրության մասին ամփոփ տվյալներ չկան։ Կ. Կոստանյանի տված երգում, այդ երգի հորինման ժամանակի մասին, ինչը, Հ. Սսեցին գրել է «Զեռօրինէ» թվին. Կ. Կոստանյանն այդ թիվը համարում է 1585, հաշվի մեջ առնելով միայն «ՁԵՌՕ» տառերը, դուրս թողնելով «ՐԻՆԷ» տառերը։

«Յայտնում բանից քոց լուսաւոր» բանաստեղծության մեջ կարդում ենք.

«Ցուցանէ զայս թիւ Թորգմայ.
Առ որ չինէ բանակ սորայ».

Մենք դուրս ենք թողնում «չինէ» բառը, թվական ընդունելով միայն «Առ որ»-ը՝ 1092+551=1643։ Նախորդ «Զեռօրինէ»-ից էլ պետք, այս օրինակի հիման վրա, վերցնել միայն «Զեռ»-ը (1085+551=1636)։

[1] Նաև՝ հարամխօռք։

[*] Նեյլէր, նէյլէր=ինչեր։

«Այս սազ զուսակոն բէր Ակօր լէզուն» երգի մեջ թվականն է «Ղարաբարա կապ բըվական Հայուն». ուր «Ղարաբարա» բառը պիտի լինի «Ղաաբարա»..., ըստ որի կստանանք 90+1+1000+1+2+1+2+1= =1649։

Տաշյանի ցուցակում (էջ 791) կա տպագրության ներկայացվող «Զակաճզդ բաց» բանաստեղծության մի այլ օրինակի նշումը, որի վերջին տողերը մի քիչ այլ են.

Զամէն սախը, գրեղ յէ՞ր թողիր,
Զայլք ի բաց թող 'ւ ի քեզ փակիր.
Թիւ ՂԱ. եղև, ի քնոյ զարթիր,
Այ եղկելի, հայ(իֆ սէնի)։
Եղբարք, լսեցէք, զամէնն տեսայ,
Ցանկոք սնոտիս սուտ զարմացայ և այլն։

Այս տողերի համաձայն, հորինման թվականն է ՂԱ. (91), որը պիտի ընդունել 1091+551=1642։ Այսպիսով ունենում ենք ևս մի տարեթիվ՝ Հակ. Սանցու մասին, որը միաժամանակ մեր տպագրության ներկայացրած բանաստեղծության հորինման թվականն է։

Հալեպի ձեռագրաց ցուցակի համաձայն եթե ընդունենք, որ «Այ անգին գոհար»-ը հորինված է բանաստեղծի կնոջ մահվան առնչությամբ, ապա կստանանք, որ 1636 թվին նա արդեն ամուսնացած էր և զրկված կնոջից։ Դրա հիման վրա կարելի է պնդել, որ Հ. Սանցին ծնվել էր մոտավորապես 1600-ական թվերին, և 1636 թվին գտնվում էր իր հայրենիքում (Սիս)։ Իր հայրենիքում է գտնվել նաև «Ցայտնումն բանից բաց յուսաւոր» բանաստեղծությունը հորինելիս (1643 թվին)։ Այդ բանաստեղծության մեջ կարդում ենք.

«Էյ, Տէր Գրիգոր, ես քեզ մեղայ,
Առջև ծերոյդ ես հոխացայ.
Յորք հանի զրանս վանքն Սըսայ,
Առ տո Շմաւոն կաթողիկոսայ.
Ցուցանէ զայս թիւ Թորգոմայ,
Առ ազ չընէ բանակ սորայ,
Նոյեմբերի թոյ մէ Համայ,
Տարս ի Սըսայ Զէյթուն կուգայ»։

Այդ թվից մի տարի առաջ է (1642) հորինված տպագրվող բանաստեղծությունը։ Ուստի դա ևս հորինված է Սսում, ուր և տեսել է իր նկարագրած «կարգ ու կանոնը»։

Այնուհետև Հակոբ Սանցին տեղափոխվում է Ղրիմ (Ղարասու ավանը), ուր և գրել է Ղարասուլի զովքը։ («Այս սազ զուսակոն բէր Ակօր լէզուն»)։

«Այս խաղ չափարան Ցակոբայ լեզուէ» երգը՝ Պոլսի մասին՝ նույնպես գրել է Ղարասուլում (կամ Ղարասուլից որևէ առիթով Պոլիս գնացած օրերին)։ Դա երևում է «Է սուն Ղարանֆիլ Ներկիզ»-ին ծանոթությունից, որը Ղրիմահայ հայտնի բանաստեղծ Խասպէկի (Խաչատուր, նաև նկարիչ ու գրիչ. 1610— —1686) մի բանաստեղծության սկիզբն է։

Տաշյանն իր ցուցակում Հ. Սանցուն է վերագրում մի այլ բանաստեղծություն ևս՝ Երուսաղեմի մասին, որը մեզ հավանական չի թվում։

ՆԱԶԱՐԵԹ

## ՏԱՂ Ի ՎԵՐԱՅ ԲԼԲՈՒԼԻ

Երկու բլբուլ բաղին միջումն խօսէին,
խօսէին,
Չի գիդացի, թէ ո՞րն էր [ում] համարին,
համարին.
Քա[ղ]ցր ձայնիւ [մէկ]—մէկու հետ խօսէին,
խօսէին,
Անուշ թվեալ իմ բերանիս համարին,
համարին։

Առաջ Եւան, որ ստեղծեց Ադամայ,
Ադամայ,
Չար թշնամին խաբեան դանն էր Ադամայ,
Ադամայ,
Մեք այն մեղքի համին հայրին համարին,
համարին։

Վարար կետ էր, որ բերէին ասելով,
ասելով,
Դարդն շատ է, չի քաշիլ, հա՜յ, ասելով,
ասելով,
Իշխան մարդիք այս բանքեր համ արին,
համ արին։

Թուրն քաշեաց, սասանեաց գլխ խաղար[ին]
խաղար[ին],
Սոհրաբ արին, վարս առին, խաղ արին,
խաղ արին,
Եարմէղ, սասուած, նոքայ ինչի՞ համարին,
համարին։

Շօշափ բերին միայն ակրին Նազարին,
Նազարին,
Քոյ հասրաթէս ծառայ աչքդ Նազարին,
Նազարին,
Արտասունքն համ ջուր եղև, համ՝ արին,
համ՝ արին։

Ձեռ. № 1265, թերթ՝ 1ա,
ժամանակ՝ XVII—XVIII դդ.

Ծանօթ.—Գրված է ձեռագրի դատարկ մնացած թերթին՝ խառը գրչությամբ։ Տաղի անմիջական շարունակությունն է. «Ես անարժան Տէր Նազարեթս գրեցի քոյր Շահանին համար: Գիրս մնայ, ձեռս կնայ»:

Ինչպես երևում է, Նազարեթի այս երգը գրված է ոչ միայն քույր Շահանի համար, այլ և նրա ըն-

բանից։ Եղած ակնարկներից նկատվում է, որ իշխան մարդիկ քույր Շահանին ծանր վշտի մեջ են գցել՝ նրան վարկաբեկելով, սակայն թե ինչու, ինքն էլ չգիտե.
«Եարաբ աստուած, նոքա ինչի՞ համարին, համարին»։

Ըստ էության այս երգը միջնադարյան մի գեղջուկ աղջկա բողոք է կեղեքության բոլոր սահմանները անցած «իշխան մարդկանց» դեմ։

Նման այլ երգ չգիտենք։

Աշուղ Նաղարբեթի ով լինելն էլ մնում է անորոշ։ Մեր Մատենադարանի № 7707 ձեռագրում (ընդօրինակված 1611—1614 թվերին) կա մի բանաստեղծություն, որի վերջում հեղինակը հիշվում է որպես Աշուղ Նազար Բասենցի։ Իսկ № 1495 ձեռագրի 149բ թերթում գտնվող տաղավորի հեղինակն է ամն Նազարէ։

Նույն Նաղարն է այս երգերի մեջ հիշվածը, դժվար է ասել։

## ՏԱՂ ԿՌԸՆԿԻ

[Ժողովրդական]

Կանչէ, կըռունկ, կանչէ, ձայնիկդ ի հոգիս,
Խիստ զանազան քաղցրիկ ձայնիկ մի ունիս,
Աշունն յառաջ երթաս գարնան ուհարիս,
Թըղթիկ մի գրեմ, տամ՝ իմ տանն տանիս։

Կանչէ, տուռնամ, կանչէ, դու քաղցրաձայնես,
Ձայներն կուգայ հեռուստ, դու անըրման ես,
Բաղում և խիստ ի վեր բարձրագընայ ես,
Աղաչեմ յիմ տանէն խաբար մի բերես։

Կանչէ, տուռնամ, ձայնէ, իմ հոգւոյ հոգիս,
Երթաս, բարով դառնաս, մուրատիս դու հասնիս,
Ղարիպութիւն անկայ, տրտում է գերիս,
Թըխթիկ մի յիմ տանէն բեր, մխիթարէ զիս։

Կանչէ, կռունկ, կանչէ, սրտով սիրելի[ս],
Գիտեմ, որ բարձր կերթաս, յամէն անդ նայիս,
Ջաչերդ համբուրեմ՝ զիմ տունն տեսնիս,
Որ է անդադար ի մէջ իմ սրտիս։

Գունդատ տանեմ քեզ, թռչուն գովելի,
Ղարիպութիւն անկայ տղորմ ու լալի,
Ոչ ազգական տատ կայ և ոչ սիրելի,
Սրտիկս է դառնացեր, աչերս է լալի։

Գնայ, կռունկ, գընայ, տէր ընդ քեզ լիցի,
Պահէ բըքեղ անփորձ ի յորդոց-յորդի,
Ես եմ ղարիպ անկեալ ի յօտար երկրի,
Տէրն Նասիպ տանէ զմեր տեղըն մեզի։

Ձեռ. № 2339, թերթ՝ 274ա—274բ,
ժամանակ՝ XVII դ.

Ծանոթություն.—Այս երգը, որքան գիտենք, անտիպ է, կան սույնի տպագիր մի քանի փշրանք վարիանտներ, մեծ մասամբ որպես քառյակներ.

ա) Կանչէ, կռունկ, կանչէ, ձենդ բարակ է,
Եարս կորուցեր, հոգս նաման է,
Կռունկ, եղած տեղդ չայիր չիման է,
Աշխարհք արեգակ, ինձի տուման է»։
բ) Կանչէ, կռունկ, կանչէ, քանի՞ գարուն է,
Ղարիբների սիրտը գունդ-գունդ արուն է,
Քու եղած տեղդ չայիր չիման է,
Աշխարհքին արեգակ, ինձի տուման է։
գ) Կանչէ, կռունկ, կանչէ, բարձր սարեր է,
Գնացեր եմ ղարիպ երկեր, վախեմ մեռնելէն,
Մի լա, մայրիկ, մի լա, ես ղարիպ տեղ եմ,
Վաթանիս հողի ջրին ես կարօտցեր եմ։

(Ե. Լալայան, «Զանգեզուրի բուրմունք»
1892 թ. էջ 21 և 34—35)։

Այդ փշրանքներ էլ կան Մ. Աբեղյանի «Ժողովրդական խաղեր»-ում (Տես 758, 759, 795, 1052)։

Դրանք բոլորն էլ ժողովրդական ծագում ունեն և հիմնականում նվիրված են պանդխտության թեմային։ Չնայած դրանք գրի են առնված XIX դարում, բայց մեր ներկայացրած երգը ցույց է տալիս, որ դեռ XVII դարում շատ է տարածված եղել այդ մոտիվը, որի հիման վրա ստեղծվել է ներկայացվող բանաստեղծությունը։

Հավանաբար այդ երգն էլ հանրահայտ «Կռունկ»-ի («Կռունկ, ուստի՞ կուգաս») հետ ծնվել է նույն տարիներին։ Երկուսի էլ ամենահին օրինակները գտնված են XVII դարի ձեռագրերում։

ՀՈՎՍԵՓ

## ՏԱՂ ԿԱՐՕՏԻ ՍՐՏԻ

Ցերեկ կու չարժի սրտիս սէրն իմ սիրելեաց,
Կելնու աւշն ի գլխոյս և աչքերոյս՝ լաց,
Խառն արիւն կու թափի յետ իմ արտասուաց։
Կարօտ եմ, կարօտ եմ, կարօտ՝ սիրելեաց,
Կարօտ՝ ազգականի և բարեկամաց։

Որչափ ուրախ շրջիմ՝ պանդուխտ եմ տանիս
Եւ կամ ի մէջ ցաւոց, ոչ գոյ ընդանիս,
Միտք իմ ամենայն ժամ՝ ի օթևանիս։
Կարօտ եմ, կարօտ եմ, կարօտ՝ սիրելեաց,
Կարօտ՝ ազգականի և բարեկամաց։

Վայրիպար անցաւ կեանքս իմ աշխարհի,
Բարեաց գործոցն հեռի, մօտ եղայ չարի,
Եղբարց կարօտ մնացի երկրիս օտարի։
Կարօտ եմ, կարօտ եմ, կարօտ՝ սիրելեաց,
Կարօտ՝ ազգականի և բարեկամաց։

Սիրոյն ծնողացս իմ ցաւք բազում յանձն առի,
Հուր եղև բովանդակ, մարմինս կու վառի,
Միտք իմ խաւար, լեզուս այլ ոչ բարբառի։
Կարօտ եմ, կարօտ եմ, կարօտ՝ սիրելեաց,
Կարօտ՝ ազգականի և բարեկամաց։

Է՜, ինձ միշտ վայ տեսեմ ի անցաւորիս,
Ամք և աւուրքս ունայն է մեղաւորիս,
Հեռի եմ ծանօթից և մերձաւորիս,
Կարօտ եմ, կարօտ եմ, կարօտ՝ սիրելեաց,
Կարօտ՝ ազգականի և բարեկամաց։

Փակեալ եմ ես զտան դրունոն հօր իմոյ,
Միշտ խոցոտում սիրտս իմ գութկ մօր իմոյ,
Փափակն քուրոջս ունեմ և եղբօր իմոյ,
Կարօտ եմ, կարօտ եմ, կարօտ՝ սիրելեաց,
Կարօտ՝ ազգականի և բարեկամաց։

Ձեռ. № 5954, թերթ՝ 16ա—16բ,
ժամանակ՝ XVIII դ.

Ծանօթություն.—Հեղինակի անունն այս երգում պահպանված է անագլուխ տառերով: Նույն ձեռագրի հաջորդ էջում կա սիրո մի երգ, որի մեջ նույնպես անագլուխ տառերով հյուսված է նույն անունը («Յովսէփ»):

Ընդգծված բառերը ձեռագրում գրված են այսպես (գրում ենք ըստ հերթականության), «լացս», «արտասուվաց», «ազգայկանի», «մէչ», «վայրիփարաանցաւ», «հանցն», «անցաւորիս», «քուրոսչս»։

ԲԱՐՈՒՆԱԿ

## ՏԱՂ ԱՆՈՒՇ

Առաւօտուն հաւն խօսի,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ.
Ես ալ քեզի բան մի տամ,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Ինձի եկեր կարկուտ ու բուք,
Քո աէրպըն՝ մէկ մէ, ինձ՝ երկուք,
Աչուենս կու մտնես ի սուք,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Ղաֆիլ կու տանուն զհոգիտ,
Վերանայ զհոգիտ,
Հեղեղն է տարեր ըզայգիս,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Վարդն տեսակով կու ծախվի,
Կանկանն թէփէն կու կախվի,
Աչուենս կու ձայներդ փոխվի,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Վարդն թառմեր և գնացեր,
Պըլպուլն զի տերն իմացեր,
Քեզի չոր փուշն է մնացեր,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։

Ես ի Պաղտատ եմ, դու ի Միս,
Ես ի քեզ նայիմ, դուն ի յիս.
Հիւղէթ դուն այլ ակրա մի ունիս,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Ես ի Պաղտատ եմ, դու Հալապ,
Ձայներդ չի կորնի պէյտոլապ,
Ես կու մաշիմ վարդին սապապ,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Քանի կանչես, պլպուլ, քանի,
Քամին զքո ձայնին տանի,
Ով որ լսէ՝ խէջ կու լինի,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։
Բարունակն կանէ ֆէս,
Դուն այլ չես պահեր ի պօֆէս,
Քեզի շինած է արծաթէ զէֆէս,
Զրուցէ, պլպուլ, զրուցէ։

Ձեռ. № 7708, թերթ՝ 41բ—42բ,
ժամանակ՝ XVIII դ.

Ծանօթություն.—2-րդ տան 2-րդ տողում «երկուս» բառը փոխեցինք «երկուք»-ով: 3-րդ տան

2-րդ տողը պակասավոր է։ 4-րդ տան 2-րդ տողում «թեվէն» բառը ձեռագրում գրված է «ընթեվէն»։

Անուղղելի մնաց 5-րդ տան 1-ին տողի «գի» բառը։

Այս երգն իր կրկնակով հիշեցնում է Անդրեաս Արծկեցու «Ահա եղև այլի զարուն» երգը։

Նման մի ուրիշ երգից, № 6388 ձեռագրում (էջ 43), պահպանված է հետևյալ հատվածը.

«Իմ ցաւըս ինձ հերիք է,
Մէկ-երկու չէ, բիւր հազար է.
Քու հառաչն զիս կու հալէ,
Զրուցէ, սոխակ, զրուցէ։
Նաև ծաղկըն հաւասար հասեր.
Սոխակն ի վարդէն էլ դեղ արեր, (—բերարեր)
Սև է հագեր 'ւ ի սուգ նստեր.
Զրուցէ, սոխակ, զրուցէ։
Վարդն զսոխակն յորժամ տեսաւ,
Կանանչ կարմիր ծիրան հագաւ,
Բերան երաց, զիւր ցաւն ասաւ (Ձեռագրում-«ասաց»).
Զրուցէ, սոխակ, զրուցէ։
(Ի տաղարանի երես մի թուղթ էր պակաս միջոյ ու կիսատ մնաց երգս)։

Ինչպես երևում է այս երգի ոգուց, դա ժողովրդական ստեղծագործություն է, որի մշակողն է եղել այս օրինակում հիշատակված Բարունակը։ Նման մի ուրիշ ընդարձակ և անտիպ երգ պահպանված է մեր Մատենադարանի № 3751 ձեռագրում (էջ 994), ուր կան և համընկնող և բոլորովին տարբեր հատվածներ։ Այդ օրինակում կրկնակն ունի այս ձևը.

«Զրուցէ, հաւիկ, զրուցէ,
Զրուցէ, կաքաւիկ, զրուցէ»։

Նման մի երգ էլ տպագրված է Եր. Շահազիզի «Պատմական պատկերներ»-ում (1903 թ. էջ 102), ուր հեղինակն է ոմն «Անտոնիէ»։

Սույն բանաստեղծության համեմատաբար լրիվ մի այլ օրինակը գտնվում է № 2436 ձեռագրում (56բ—60ա), որը նույնպես անտիպ է։

Սույն երգի կրկնակը կա նաև այլ երգերում։

Մեր մատենագրության մեջ ընդհանրապես Բարունակ անունով անձինք շատ քիչ կան, դրանցից մեզ ծանոթ են.

ա) Մեր Մատենադարանի № 5613 ձեռագրի գրիչը (1608 թ.)։

բ) Տաշյանի ցուցակի 284բ էջում նշված Բարունակը՝ պատվիրող (1497 թ.)։

գ) Manus. brit. mus. 139բ էջում նշված Բարունակը (1622 թ.)։

դ) Manus. brit. mus. 629 էջում նշված Բարունակը (անթվական)։

Արդյոք կապ կա՞ այս Բարունակներից որևէ մեկի և տպագրության ներկայացվող Բարունակի միջև, չենք կարող ասել։

## ՀԱՐՈՒԹՅՈՒՆ

* * *

Ես իմ փոքրիկ երախա՜յ, երախա՜յ,
Զատերս եղին փալախա՜յ,
Վասն այն ելեալ եմ փախա՜յ,
Վա՜յ ինձի։
Արդ տարցի իմ մայր Նազ[լ]ուին, Նազլուին,
Իմ մեծ եղբայր Սարգիսին,
Նայև մեր ազգականին,
Վա՜յ ինձի։
Ես իմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատերս եղին փալախայ,
Վասն այն ելեալ եմ փախայ,
Վա՜յ ինձի։
Յորժամ գնացի ի վանքըն, ի վանքըն,
Թէ յուսանիմ սաղմոս գիրքըն,
Տեսի խիստ ծանր էր կարգն,
Վա՜յ ինձի։
Ես իմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատերս եղին փալախայ.
Վասն այն ելեալ եմ փախայ,
Վա՜յ ինձի։
Յորժամ մտի վարժատուն, վարժատուն,
Նայեցայ չարեք անկիւն,
Տեսի փալախայն վեց կանգուն,
Վա՜յ ինձի։
Ես իմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատերս եղին փալախայ,
Վասն այն ելեալ եմ փախայ,
Վա՜յ ինձի։
Յորժամ եղին փալախայ, փալախայ.
Զի եղև միջնորդ և արխայ,
Նա զիս ծեծէր անխնայ,
Վա՜յ ինձի։
Ես իմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատքերս եղին փալախայ
Վասն այն ելեալ եմ փախայ,
Վա՜յ ինձի։
Վա՜յ իմ գալու օրերուս, օրերուս,
Դարման արէք ատներուս,
Արիւնաթափ գունկներուս,
Վա՜յ ինձի։

Ես եմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատքերս եղին փալախայ,
Վասն այն եղեալ ես փախայ,
Վայ ինձի:

Արդ տացի վարդապետին, վարդապետին,
Չեմ տիրանալ քո փայտին,
Դաստա կապած ջրպատին,
Վայ ինձի:

Ես եմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատքերս եղին փալախայ,
Վասն եղալ ես փախայ,
Վայ ինձի:

Վանքէդ եղեալ փախայ ես, փախայ ես,
Որքան արբ եմ ես, տես,
Այլ գիս դու ոչ տեսանես,
Վարդապետ:

Ես եմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատերս եղին փալախայ,
Վասն այն եղեալ ես փախայ,
Վայ ինձի:

Արդ տացի վարդապետն, վարդապետն,
Այլ ոչ դառնամ դարձեալ յետ,
Մնաս բարով այսուհետ,
Վարդապետ:

Ես եմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատերս եղին փալախայ,
Վասն այն եղեալ ես փախայ,
Վայ ինձի:

Յորժամ հասայ ի մեր տուն, ի մեր տուն,
Եօթն աւուր անկայ ի քուն,
Չի մնացի ժամ մի արթուն.
Յարութիւն:

Ես եմ փոքրիկ երախայ, երախայ,
Զատերս եղին փալախայ,
Վասն այն եղեալ փախայ,
Վայ ինձի:

Ձեռ. № 8213, թերթ՝ 32բ—33ա,
ժամանակ՝ 1788 թվ.

Ծանոթություն.— Սույն բանաստեղծությունը միակ նմուշն է, ուր այնքան ազատ և անմիջական պատկերներով, ոճն աշակերտ, նկարագրել է միջնադարյան դպրոցի տանջանքները:

Ձեռագրում «Փալախայ» բառը երբեմն գրված է «փալախայ» ձևով, միօրինակության համար ընդունեցինք բոլոր դեպքերի համար «Փալախայ» ձևը: Կրկնակը՝ ձեռագրում, բացի առաջին անից, մյուս բոլոր տներում ցույց է տրված ոչ լրիվ, մենք տալիս ենք լրիվ:

Ձեռագրի գրիչն է Հովհաննես վարդապետը:

Բանաստեղծության հեղինակ Հարությունի ով լինելը մեզ համար պարզ չէ: Հավանաբար նա այդ երգը հորինել է 1788 թվից ոչ էլ այնքան առաջ: Այդ թվերին հայտնի է եղել մի այլ բանաստեղծ Հարություն, որը կոչվել է Տփխիսեցի: Այս վերջինն իր ուսումն ստացել է Կ. Պոլսում Հակոբ Նալյանի և Բաղդասար Դպրի հիմնած և ղեկավարած դպրոցում: Նա այդ դպրոցի մասին թողել է գրվածական ընդարձակ բանաստեղծություն (անտիպ): Կարելի է կասկածել այդ Հարությունների նույնության վրա, որովհետև կան հիմքեր: Այսպես՝ սույն № 8213 ձեռագրում, ուր կա ներկայացվող բանաստեղծությունը, կան մի շարք նամակների ձևեր: Այդ ձևերի տակ կան ստորագրություններ, որոնց թվում՝ նաև «Գ. չ. Դ.»[1], «Պաղտատար չճշին Դպիր»[2], «Ցուրուքին չճշին Եռ ծառայս»[3]: Այս վերջին նշումի մոտ կա «քուրին ԹՃՂՉ մար. ԻԼ ի Կոս. Թոլ. ԹՄԼԷ»: Այդ երկու թվերը (1747 և 1788) երևի նամակի խաբինմած, ապա՝ լճղօրխցոսխմած թվերն են. Եթե ընդունենք, որ սույն բանաստեղծության հեղինակը նույն Հարություն Տփխիսեցին է, ապա նրա այս բանաստեղծությունը պետք է հորինված լինի ԺԸ դարի սկզբներին, երբ նա աշակերտ է եղել:

Հարություն Տփխիսեցին կոչվում է նաև Կարնեցի, ունի մի շարք բանաստեղծություններ՝ մեր Մատենադարանի № 8216 ձեռագրում:

ՕՔՍՈՒԶ ԱՎԵՏԻՔ

## ՏԱՂ ՍԻՐՈՅ

Տեփ ղաֆիլ նայեցայ, աւելցաւ բոցս,
Առ քու քնքուշ, բլբուլ ձեռացս մեռնիմ,
Աչա քեզի ակատր, խոթէ ի ծոցս,
Առ քու քնքուշ, բլբուլ ձեռացդ մեռնիմ:

Արժան ես տառածոյ պսակի, թաքի,
Սէրամէրնում վրայ դէրպապըս հագի[4],

[1] 1ա թերթում:
[2] 12բ թերթում:
[3] 12ա: Նման նմուշներ կան և այլ թերթերում:
[4] Ձեռագրում՝ հագին:

Ղալամգար ու ավիր հեղիկ մը պաքի,
Ահա քու քնքուշ, բիւրոջ[1] ձեռացդ մեռնիմ։
Դու զիս չէ՞ր կազարես, ես զքեզ կուզեմ,
Բեր զլֆիկս սանտրեմ, մազիկս հիւսեմ,
Չէս զիրք, աւետարան, բեր աչքըս քսեմ,
Ահա քու քնքուշ, բիւրոջ[2] ձեռացդ մեռնիմ։
Յովսէփ Գեղեցիկը սատանի ձեռք չունէր,
Երբ տեսայ՝ հառչեցի, սրտիկս արեան էր.
Աստուած ինտծը է բանեցծեր 'ւ օրիներ,
Ահա քու քնքուշ, բիւրոջ[1] ձեռացդ մեռնիմ։
Իմ անունն Աւետիք ու քուկն է Սառայ,
Դուն ինձի պարոն ես, ես քեզի ծառայ.
Հանէ ծոցուտ՝ հայրիմ, թէ չէ ես մեռայ,
Ահա քու քնքուշ բիւրոջ ձեռացդ մեռնիմ[2]։

Ձեռ. № 9271, թերթ՝ 146բ—147ա,
ժամանակ՝ XVII դ.

Ծանոթություն.—Սույն տաղի հեղինակի մասին կենսագրական տեղեկություններ չկան։ Այս երգից բացի, նույն ձեռագրի հաջորդ թերթում, կա նույն հեղինակի մի այլ բանաստեղծություն՝ հայատառ-թուրքերենով, որն սկսվում է այսպես.

«Պէնի սէվտիկիմտէն այրը տիւշիւրտուն»

Դա ևս սիրո երգ է։ Այդ երգում նա իրեն կոչում է Օրղուզ Աւետիք.

«Օրղուզ Աւետիքին տէրտի յիկին տէր..»

Ու չնայած ներկայացվող երգում նա իրեն կոչել է լոկ Ավետիք, բայց և այնպես մենք նրա անունը գրեցինք լրիվ (Օրսուզ Ավետիք)։ Օրսուզ մականունով ուրիշ երգիչներ էլ կան մեր մատենագրության մեջ (Օրսուզ Տերտեր, Օրսուզ Վանեցի)։ Այստեղ Օրղուզ ձևը երևի գրչական սխալի արդյունք է։

Հեղինակը հավանաբար նույն դարին է պատկանում, երբ գրի է առնվել երգը (17-րդ դ.)։

## ՄԵԼՔԻՍԵԴԵԿ

* * *

Մեր մեղքըն է առեր գխօրագն զօրաւոր,
Ինքըն հրպարտ է զէս բըմեղաւոր,
Ոչ օրէնք ունի, ոչ բան հոգևոր,
Ոչ նիքեան ունի, ոչ պըսակաւոր։
Ելեալ մէջ գիշերի զաստուած կու օրհնէ
Եւ ցորեկն ի բուն անան կու քայլէ,
Ոչ ի մարդկանէ յամօթ կու քաշէ,
Եւ ոչ կանոնաց նա հնազանդէ։
Լսեցէք, եղբար[ք], զգանկատ աղուեսին,
Որ կաղաղակէ ի ձեռաց սարին,
Թէ՝ թագաւոր տաք ի մէջ աշխարհին՝
Մէկ կին մի կանեն 'ւ ընկեր մի նորին։
Բան զաս մեղաւոր այլ ըսկի չի կայ,
Որ քան 'ւ երսուն կին առեր, կերթայ,
Ոչ ի մարդկանէ յամօթ ունի նայ
Եւ ոչ աստուծոյ նա կու վախենայ։
Ելեր է, կերթայ ի փողոցն ի նա,
Զորն որ կամենայ՝ կու հծնէ ըզնայ.
Քըչիզ մի կտրիկ, որ թէ զըտնէնայ,
«Գուզուաի-զուռզուն» կու ձենէ ըզնաայ։
Սուք չունի ըսկի և ոչ արամի նա,
Թէ մի կնոջնուս կապա պիտինայ.
Ոչ ըղձազերուն կերակուրըն կու հոգայ
'Ի ոչ ըդմարթելուն օրըն կիշէ նա։
Եղեւի խօսող, շատ մի հպարտանոր,
Ըսկի զէս ըզքեզ պանիկէ չի տեսար,
Որ թէ հիւանդանար, նա էրէց չերթար,
Զէս զքեզ մեռնի, կու Թայ անճար։
Դուք զաստատանու եկայք՝ խօսեցէք,
Զմեղքիսեթեկիս զզանկատն լսեցէք,
Խօսօղին ձեռնէն զիս խալսեցէք,
Զի թագուր քնիմ, զբանըս լսեցէք։
Երբ կու զարգենամ, զիտեմ թէ լաւ է,
Ի մէջ գիշերին ա խօրօզ խօսէ.
Զի հանդչեցներ՝ թէ սազմոս ասէ,
Գլուխըս ծանր է—որ թաս պակաս է։
Այ իմ սիրելիք, զզանկատս լսեցէք,
Բըռնեցէք ըզնա, միզըն կարեցէք,
Ով դուք, սանտիկնայք, շուտով բեռեցէք,
Ու չոր-չոր փասով զինքըն խարմեցէք։
Սախով, տազդեզով ըզփորըն լցէք,
Շատ մեղք ունի զա, զկրակն խիստ արէք,
Նման պանիկի զմօրքըն ձգեցէք,
Թէ շատ մեղա գայ՝ ի մէձլիս բերէք։
Ելէք, գնացէք, աշխարհս շուրջ եկէք,
Ըզկարմիր գինուն տեղըն իմացէք,
Ըզկակուղ լօշերըն հազըր արէք,
Ու կարմիր գինով ըզնա լըւացէք։
Բարունիք, եղբարք, բոլորն շարւեցէք,
Յառաջ ըզաստզ բանիս յիշեցէք,
Ու մէկ-մէկ զաւաթ դուք անուշ արէք,
«Աստուած ողորմի հոգոյն» ասացէք։

Ձեռ. № 7193, թերթ՝ 115բ—117բ,
ժամանակ՝ XVII դ.

---

1 Ձեռագրում՝ Ահա քու բիւրոջ քն"։
2 » բդ"։

1 Ձեռագրում՝ բըդ"։
2 » բդրոջ ձեռացս մեռնիմ։

Ծանոթություն.— Ինչպես ցույց է տրված վերահիշյալ երգի առաջին տառերով և 8-րդ տան մեջ, այդ երգի հեղինակը կոչվում է Մելքիսեդեկ:

Մելքիսեդեկ անունով այն միջնադարյան բանաստեղծի մի տաղը տպված է Զաքարիա Գնունեցու տաղարանում: Դրանից բացի Օրմանյանի «Ազգապատում»-ի 2683 էջում նշված է, նաև մի այլ Մելքիսեդեկ, «Սուլինի Շայիր» մականունով (1698):

Կապ ունի՞ արդյոք մեր ընդօրինակած տաղը այդ Մելքիսեդեկներից մեկն ու մեկի հետ, չգիտենք:

Տպագրության մեջ վաղուց ի վեր ծանոթ է միջնադարում ժողովրդականացած «Տաղ վասն ագռաւի» բանաստեղծությունը, որն սկսվում է մոտավորապես նույն տողով, որով սկսում է մեր ներկայացրած այս երգը:

Այդ երկու երգն էլ միասին գտնվում են նույն № 7193 ձեռագրում: Ագռավինն ներկրվածը ավելի վաղ ժամանակի արդյունք է, ուստի Մելքիսեդեկի երգը հորինված է դրա նմանությամբ: Չի կարելի կարծել, թե ագռավի երգն էլ է պատկանում Մելքիսեդեկին:

## ԳՈՎԱՍԱՆՔ ՆՈՐ ՓԵՍԱՅԻ, ԶՈՐ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ Է ԳՍԱԿՎԻԼ ԸՆԴ ՀԱՐՍԻՆ ԻՒՐՈՅ՝ ՕՐԻՆՕՔ *

[ժողովրդական]

Էն սատուծոյ օրհնութենով
Ծառ այսայր բազմեցար,
Թաչ ալամ ի գլուխդ,
Թաչ ալամ բազմեցար:

Սուրբ Կարապետու սուրբ զօրութենով,
Հայ, զօրութենով,
Ծառըս ծաղիկ է,
Ծառ ծաղկեցաւ,
Ծառ կայնեցաւ՝
Կանանչ ու կարմիր տերևով:

—o—

—Թագոր, ինչ բերեմ քեզ նման,
Քոյ կանանչ արևդ ի նման,
Էն լուսաւ ատաղն, որ կու ծաղկի,
Ծաղիկն արևդ ի նման:

---

* Միջնադարյան օրհնական հարսանիքը բավականին մանրամասն նկարագրված է № 3937 ձեռագրում (193ա—196բ), որը պատկանում է ԺԵ դարին: Այդտեղ բաներից ավելի կետերի մեջ ամփոփ կերպով տրված են բոլոր արարողությունները:

2. «Այսայր»-ը հավանաբար պիտի լինի «Հայսաւր» (այսօր):

1—4 տողերը ձեռագրում ծայնագրված են, ուստի հենց այս տողերից անմիջապես հետո տրված է հետևյալ ծանոթությունը. «Այս է խղճալին, որչափ որ կարաս՝ ասա»: Դրան կից կա նաև այսպիսի ծանոթություն. «Սրբոյն. առաջ սուրբ Կարապետի օրհնէքն ասա, ետոյ այս, անայ այս է ձայն երկու երգանակով. այսպէս»: ապա սկսվում են հաջորդ տողերը «Սուրբ Կարապետու....» և այլն. (տես տեքստում):

Ծաղկոցների եղանակի մասին նշումներ կան նաև «Էմինյան ազգ. ժողովածու»-ի մեջ. «Ծառ ծանր և լազը կերգեն ապաս չարին. Նույնանը ամեն տող կը կրկնեն: Երրորդ տողի վրա ձայները կը բարձրացնեն, տները վերջանալուն՝ միասին կասեն.—«Ասված ծնորհավոր էնա»: Ապա կը կրկնեն.—«Մեկ էլ հեվելի»: Նույն տեղում նշում կա, թե երգաշարքի որ մասն ինչպես է երգված («Մանր», «միջակ արագ», «բերկ արագ», «տարբեր», «ծաս արագ» և այլն Ձ. հատոր էջ 33—35):

5—10-րդ տողերին համապատասխան տողեր գտնում ենք «Ծաղկոց»-ի ԺԹ դարի վերջին գրի առած օրինակների մեջ նաև հետևյալ կերպ: Աղասների մի խումբ երգում է («Թխաթցու հարսանիքը»).

«Սուրբ Կարապետի զորութենով
Ծառս ծաղկեցաւ,
Ծառ կայնեցաւ,
Ճիւղ տուեց,
Ճիւղ կայնեցաւ,
Կանանչ ու կարմիր»:

Աղասների մյուս խումբը շարունակում է.

Սուրբ Սարգսայ զորութենով
Ծառս ծաղկեցաւ,
Ծառս կայնեցաւ,
Ճիւղ տվեց,
Ճիւղ կայնեցաւ,
Կանանչ ու կարմիր»:
(«Էմին. ազգ. ժող.» Ձ. 387—415):

Ապարանի «Ծաղկոց»-ի մեջ այդ հատվածը ունեցել է այսպիսի ձև.

«Էրկնքից զէտնի զորութենով
Էդ ծառն ծաղիկ էր,
Ծառ ծաղկեցաւ,
Ճուղ կայնեցաւ,
Կանաչ կարմիր»:
(«Փշրանքներ» 56—58):

10-րդ տողից հետո ձեռագրում կա հետևյալ ծանոթագրությունը.

«Որչափ որ սիրտդ անուն կարաս՝ ասա, ետոյ այս՝ «Թնձանճ բազպուրի արևըն» և այլն. ետոյ՝ այսպէս. «Թագոր, ինչ բերեմ...» և այլն. տես տեքստում):

Թե ինչ երգ է եղել իրենց այնքան ծանոթ «Թնդանճ բազպուրի արեվըն» տողով սկսվող երգը, չգիտենք:

— Թագոր, ինչ բերեմ քեզ նման,
Քոյ կանտչ արեգ ի նման.
Էն տատւօտն, որ կու ծաղկի,
Ծաղիկն արեգ ի նման։
— Թագոր, ինչ բերեմ քեզ նման,
Քոյ կանանչ արեգ ի նման.
Էն բալասան ծաղիկն, որ կու ծաղկի,
Ծաղիկն արեգ ի նման։

—o—

Օգնէ Յիսուս, օգնէ Քրիստոս,
Օգնէ մեր տէր հայր ամենակալ։

— Թագոր, ամէ, կիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, զովքն ասէյանք։
— Գնացէք, բերէք խօսան պիւլպիւլն,
Որ գայ, գովէ, հա՜յ, ծառս ու ծաղիկ։

Գնացին, բերին խօսան պիւլպիւլն,
Էրնեկ մտաւ, հա՜յ, ի զարպասին,
Էրնեկ մտաւ ի զարպասին,
Բարև երետ, հա՜յ, Թագաւորին,
Բարև երետ Թագաւորին,
Հազար բարին, հա՜յ, իր խէչ մանկտացն։

[Մենք էն պիւլպիւլին հետ կէհէյանք,
Երբ մուտն ընկնէր, հա՜յ, հոն պառկէյանք,
Երբ մութն ընկնէր հոն պառկեյանք,
. . . . . . . . . . . . . . . . . . .]։

— Թագոր, յամէ, կիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, զովքն ասէյանք։
— Գնացէք, բերէք եղնիկ դաշտէն,
Որ գայ, գովէ, հա՜յ, ծառս ու ծաղիկ։

Գնացին, բերին եղնիկ դաշտէն,
Էրնեկ մտաւ, հա՜յ, ի զարպասին.
Էրնեկ մտաւ ի զարպասին,
Բարև երետ, հա՜յ, Թագաւորին,
Բարև երետ Թագաւորին,
Հազար բարին, հա՜յ, իր ծաղկունաց։

Մենք էն դաշտին մէջ կէհէյանք,
Երբ մուտն ընկնէր, հա՜յ, հոն պառկէյանք,
Երբ մուտն ընկնէր հոն պառկէյանք,
Մեծ աստուծոյ, հա՜յ, փառս տայանք։

—o—

— Թագւոր, ամէ, կիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, զովքն ասէյանք։
— Գնացէք, բերէք զառն արեգոյն,
Որ գայ, գովէ, հա՜յ, ծառս ու ծաղիկ։

Գնացին, բերին զառ արեգոյն,
Էրնեկ մտաւ, հա՜յ, ի զարպասին,
Էրնեկ մտաւ ի զարպասին,

---

11—22-րդ տողերը համարյա բոլոր «Մաղկոց»-ներում կան (որոշ տարբերությունով)։ Միաթերթիկների հարսանիքում քառյակները երգվել են պատանիների երկու խմբի կողմից (մեկ ընդ մեջ)։ Դրա հիման վրա էլ տեքստում յուրաքանչյուր տան սկզբում գրել ենք գծիկ։ Ձեռագրում 22-րդ տողից հետո կա հետևյալ ծանոթությունը. «Այսպէս. ինչ որ ծաղիկ կարաս՝ ասայ, Խու կամացըս է, եսօյ «Թնտանէ քաղաքի արեվնէ» ասայ, եվ դասցիր արէնն (?) ասայ՝ օրչափ որ կարաս, դու գիտես, եսոյ «Թնտանէ քաղաքի արեվնէ» ասա, ինչ էլ որ արտաքեռուի ունիս, բեր խէչ ախպորն եվ խէչ մանկտացն եվ ծաղկոյնացն, սեղան բեռօղաց, քաղ ըինողացն, ծառ չինողացն, եսօյ ասայ «Օգնէ Յիսուսն»։

Եթե այստեղ ասում է, «Ինչ որ ծաղիկ կարաս՝ ասայ», ապա Ալաշկերտում գրի առնված ծաղկոցի համապատասխան տողերի համար ասված է. «Յուրաքանչյուր զովքը յաթը անկից բաղկացած պիտի լինի»։ (Եմ. Ազգ. ժող. Զ. 33—35)։

23-րդ տողից սկսվող տողերը միանգամայն նորություն են «Մաղկոց»-ների գրի առնված շարքերի համար։ Այս համույթի որոշ տողերի հնավոր ձևական արձագանքը կա տպված «Մաղկոց»-ների մեջ հետևյալ ձևով.

«Գացէք, կանչէք Թագւորանէր,
Յիզայ նստի զարդրա էնայ.
Ձողիկ զարկայ սուրբ սեղանին,
Թերն ու բարին մեր Թագւորին»։
(Եմ. Ազգ. ժող. Զ. 33)։

«Գացէք բերէք զկասնիկն ի չօլէն,
Իզայ Նրատի սէյրան անէ,
Ծընտոքիկ զարկէ սուրբ սեղանին,
Թերն ու բարին մեր Թագւորին»։
(Քնար Հայկական 144)։

25-րդ տողը — «Թագոր, ամէ կիչ կիտէյայ» — անհասկանալի է։ Կարելի է կարծել, որ դա «Թագոր, հրամէ, ինչ պիտէյայ» ձևն է ունեցել, ապա՝ աղավաղվել է (գուցէ նաև՝ «Թագւոր, նսրիր, ջէչ գիտէյայ»)։

35—38 տողերը լրացրինք մենք՝ հաջորդ տների հիման վրա։ Կետանիշ տողը (քանակի իմաստով) պայմանական է, կարող է մեկից շատ լինել։ Այդ մասը կամ գրի առնողն է մոռացել կամ ասողը։

55-րդ տողում գտնվող «զառն արեգոյն»-ը հավանաբար հեթանոսական հավատքի հետ կապված հասկացողություն է։

Բարև երևա, հա՜յ, Թագաւորին,
Բարև երևա Թագաւորին,
Հազար բարին, հա՜յ, իր ինչ մանկտացն։

Մենք էն գառին հետ կէհէյանք,
Երբ մուտ[ն] ընկներ, հա՜յ, հոն
պառկէյանք,
Երբ մուտն յընկներ հոն պառկէյանք,
Փունճ մանուշակ, հա՜յ, խոտն արծէյանք,
Փունճ մանուշակ խոտն արծէյանք,
Դէմ լուսինին, հա՜յ, որոճէյանք։

—o—

—Թագւոր, ամէ, կիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, գովքն ասէյանք։
—Գնացէք, բերեք քօշն ի քարէն,
Որ գայ, գովէ, հա՜յ, ծառս ու ծաղիկ։

Գնացին բերին քօշն ի քարէն,
Էրնեկ մտաւ, հա՜յ, ի դարպասին
Էրնեկ մտաւ ի դարպասին,
Բարև էրևա, հա՜յ, Թագաւորին,
Բարև երևա Թագաւորին,
Հազար բարին, հա՜յ, իր ծաղկունացն։

Մենք էն քօշին հետ կէհէյանք,
Երբ մուտն յընկներ, հա՜յ, հոն
պառկէյանք,
Երբ մուտն ընկներ հոն պառկէյանք,
Ի քար դօտուն, հա՜յ, Թատատէյանք,
Ի քար դօտուն Թատատէյանք,
Մեր տէր աստծոյն փառս տայյանք։

—o—

—Թագոր, ամէ, կիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, գովքն ասէյանք։
—Գնացէք, բերէք արդար մեղուն,
Որ գայ, գովէ, հա՜յ, ծառս ու ծաղիկ։

Գնացին, բերին արդար մեղուն,
Էրնեկ յիջաւ, հա՜յ, ծառատկին.
Էրնեկ յիջաւ ծառատկին,
Ժուռ մանէման, հա՜յ, երնեկ ծառին.
Ժուռ մանէման երնեկ ծառին,
Բարև երևա, հա՜յ, Թագաւորին,
Բարև էրևա Թագաւորին,
Հազար բարին, հա՜յ, իր խօշ բախտին։

Մենք էն մեղուին հետ կէհէյանք,
Երբ մուտն յընկներ, հա՜յ, հոն
պառկէյանք,
Երբ մուտն յընկներ հոն պառկէյանք,
Բաղցր ծաղկունքըն [հա՜յ], ժողովէյանք,
Բաղցր ծաղկունքն ժողովէյանք,
Բաղցրաճաշակ, հա՜յ, մեղր շինէյանք,
Բաղցրաճաշակ մեղր շինէյանք,
Եւ մոմն աստուծոյ, [հա՜յ], փէշքեաշ
տայյանք։

—o—

—Թագոր, ամէ, կիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, գովքն ասէյանք...

Թագոր, քո ծառտ, էր խնկենի,
Էր խնկենի, հա՜յ, արմաւենի,
Թագոր, քոյ ծառտ էր նշենի,
Էր նռենի, հա՜յ, էր մորենի,
Թագւոր, քոյ ծառտ էր թզենի,
Էր նռճենի, հա՜յ, էր խնծորենի...

—o—

—Թագոր, յամէ, քիչ կիտէյայ,
Որ քոյ ծառին, հա՜յ, գովքն ասէյանք։

Թագւոր, քոյ ծառըդ խիստ լաւոջ էր.
Զուլֆք ու տերև, հա՜յ, խիստ կանանչ էր։

—o—

Թագոր, նստել էր իր թախտին,
Բարով վերեր, հա՜յ, հետ իր բախտին.
Աստնվորթս ուրախութիւն,
Դաստաստանին, հա՜յ, մէջ դրախտին։

—o—

Թագւոր, քոյ ծառս գովել պիտի,
Էն գովողին, հա՜յ, դիլայ պիտի,
Սեյով սեղան, բեհնով գինի,
Ստով խօրմու, հա՜յ, դիլայ պիտի,
Բերէք լորով, բերէք կիտով,
Բերէք հօխով, հա՜յ, դիլայ պիտի։

Ձեռ. № 8064, թերթ՝ 22բ—24ա,
ժամանակ՝ 1835 թվ.

---

82—83-րդ տողերը, հավանաբար իրենց շատ նմանության պատճառով, մեզ համար դժվար մեկնելի են։

112-րդ տողից հետո կա ծանոթություն. «Ալ ծառազամ, այազնե թեշխատար ու կարան՝ աաայ, եսոյ աաայ զայյս» (խոսքը 113-րդ տողի և հաջորդների մասին է)։

116-րդ տողում «Զուլֆք» բառը ձեռագրում՝ «Զուլֆտ» ձևով էր գրված։

Ծանոթություն.— Ծաղկոց է կոչվում հարսանեկան երգերի այն շարքը, որ նվիրված է փեսայի և հարսի գովքին: Ծաղկոցները ժողովրդական երգեր են, որոնց հնության մասին Ակադ. Մ. Աբեղյանը գրում է. «Ծաղկոցը ինքն աստուածային հաւատալիքների հետ կապված ծեսերի մի վերապրուկ է, որ հասել է մինչեւ մեր օրերը»:[1] Մեր գրականության մեջ, սակայն, ծաղկոցները մուտք են գործել միայն XIX դարի վերջերից՝ բանահավաքների միջոցով:[2] Ծաղկոցի մեջ առանձին տեղ է գրավում «Ծառագովք»-ը, որը նվիրված է եղել թագավորին ընծայվող արհեստական ծառին: Այդ ծառի պատրաստման մանրամասնությունները նկարագրել է Խլաթցի Խլղաթ Բեշարյանցը 1880 թվին. «...Մեկել ազգներու բբուն օր գյացին զռանյավորի ծառ շինելու, բերեցին հերկյայն փետ մը, ճյուղեր շինեցին ու ռանգ-ռանգ թելերով վարթեր սյուրեցին պատ-պատ խնձորով վարդերին ճըղկըրքով, փըշտավ, չամչով, թզով, բադեմով խուրմով, չրով, ներկյած խավկըրով աղեկ սյուրեցին. սզազբաշին առավ շինած ծառն ուր ձեռ, տարան հրմնով թագավորին փեշկեշ...»:[1] Մեզ հասած ծաղկոցների մեջ ծառագովքի շատ քիչ տողեր կան: Այս տեսակետից խիստ ուշագրավ է մեր Մատենադարանի № 8064 ձեռագրում գտնվող, մինչև օրս անծանոթ մնացած, այս ընդարձակ ծառագովքը: Այդ ծառագովքը բաղկացած է 126 տողից, որից 104 տողը միանգամայն նորություն է և արժանի լուրջ ուշադրության: Ձեռագրում այդ գովքին կցված է հետևյալ ծանոթությունը. «Երգող սորին Վարդան Եաղուպեան յիշեցէք, Եայնժմ տիրացու Աղեքսանդրիս Գաբրիելեանն, որ գրեցի կրկին այսմ 1835 յունվարի 4, օրն ուրբաթ, Նալպանդ Գիւղն»:

Այդ «Գովասանք»-ը, մինչև օրս հայտնի ծառագովքերից ամենահին գրի առնվածն է և ամենահարուստը:



[1] Մ. Աբեղյան «Հին գուսանական ժողովրդական երգեր», 1931, 122—123:

[2] Տես «Էմինյան ազգ. ժողովածու» Ձ., «Փշրանքներ», «Բնար հայկական», «Վանա սազ», «Ազգագրական հանդես» և այլն:

[1] Էմ. Ազգ. ժող. Ձ. 401 (386—415):